Գ-ՐՏ

2009

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ 1962

A.R.A.R.@

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ռուսերեն լեզվով լույս են տեսել.

ՋԱԼԵՍԿԻ Մ., ՆՈՎԳՈՐՈԴՈՎ Ա., ՆՈՎԻԿՈՎ Ա.—«ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողներին օգնող գեղարվեստական գրականություն»:

*ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողների համար շատ օգտակար այս գրքում ընդգրկված են այն գեղարվեստական գործերը, որոնք կարող են թեթևացնել ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողի աշխատանքը, դյուրին դարձնել ուսումնասիրվող փաստերի ու երևույթների ըմբռնումը։ Նյութը շարադրված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության դասագրքի գլուխների հաջորդականության համապատասխան։ Գեղարվեստական գրականության հսկայական ցանկից հեղինակներն աշխատել են ընտրել այնպիսիները, որոնցում համեմատաբար հստակ, տպավորիչ ու ճշմարտացի է արտացոլված մեր պարտիայի ապրած կյանքի այս կամ այն պատմական իրադրությունը կամ ժամանակաշրջանը։*

*Գրքի վերջում տրված է գեղարվեստական գրականության ցանկ՝ ըստ պարտիայի պատմության թեմաների։ Այնտեղ զետեղված են ռուսական նախառևոլյուցիոն և սովետական գրողների վեպեր, վիպակներ, պատմվածքներ, պիեսաներ, պոեմներ և բանաստեղծություններ, Սովետական Միության ժողովուրդների գրողների՝ ռուսերենի թարգմանված ստեղծագործություններ, ինչպես և որոշ նյութեր՝ բանահյուսությունից և մեմուարային գրականությունից։*

ԳՐԻԳԱՐ Մ.— «Կյանք՝ երջանկության համար»:

*Այս աշխատությունը նվիրված է չեխոսլովակյան ժողովրդի փառապանծ զավակ Յուլիուս Ֆուչիկին։ Նրա անունը դարձել է ռևոլյուցիոն տոկունության և խիզախության սիմվոլ։*

*Օգտագործելով Ֆուչիկի մասին չեխոսլովակյան մամուլում վերջին տարիներս լույս տեսած նյութերը, քիչ հայտնի և անհայտ արխիվային փաստաթղթեր, ինչպես և Ֆուչիկին անձամբ ճանաչող մարդկանց հիշողությունները, Գրիգարը իր ականավոր հայրենակցի մասին ստեղծել է հուզիչ ու շատ սրտառուչ վիպակ։*

*Գիրքը գրված է աշխույժ ու գրավիչ ոճով, կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։*

ՕՐԼՈՎ Վ.— «Տեխնիկան և էսթետիկան»:

*Վաղ ժամանակներից, կյանքի համար անհրաժեշտ առարկաներ ստեղծելով, մարդը ձգտել է դրանք դարձնել ոչ միայն օգտակար, այլև գեղեցիկ։ Էսթետիկական զգացումը նույնպես խոր արմատներ է գցում մարդու բնության մեջ, ինչպես աշխատելու պահանջը։ Սոցիալիստական հասարակարգում գեղեցկությունը, արտահայտվելով ճարտարապետության, շենքերի, ամանեղենի, հագուստի, կտորեղենի և այլ իրերի ձևավորման մեջ, գնալով ավելի կատարյալ է դարձնում մարդկանց կյանքը։*

*Գեղեցկությունն ավելի ու ավելի է թափանցում արտադրության ոլորտը։ Փորձը, պրակտիկան ցույց են տալիս, որ տեխնիկան ու էսթետիկան կապված են անխզելի կապերով։ Այս հարցին էլ նվիրված է սույն բրոշյուրը։*

ԳՈՐԲՈՒՆՈՎ Է.— «Արտասահմանյան երկրները ՍՄԿՊ Ծրագրի մասին»:

*Հեղինակը օգտագործելով նոր, դեռևս չհրապարակված նյութեր, մերկացնում է իմպերիալիզմի խնկարկուների զրպարտություններն ու վայրահաչությունները, որով նրանք ճգնում են ապացուցել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի անիրականալի լինելը։ Ցույց է տալիս, որ կոմունիզմը հասարակության օրինաչափ զարգացման արդյունք է, ամբողջ մարդկության ապագան։ Գրքույկը նախատեսված է ընթերցողների լայն շրջանների համար։*

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1962 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ



### ՄԵՐ ՕՐԵՐԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ



### ԱՆՀԱՆԴՈՒՐԺԵԼԻ ԲԱՐՔԵՐԻ ԴԵՄ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



digitised by A.R.A.R.@

СОДЕРЖАНИЕ



ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ
Гос. Библиотека
ՀՍՍՀ-Арм.ССР
Им. А. Мясн.
1116-62

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԲԱՐ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ՆՈՐ ՍԵՐՆԴԻՆ

## ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար

*Կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի փայլուն ապագան նրա ընդունակ, ստեղծագործ և խիզախող նոր սերունդն է, մի սերունդ, որին վիճակված է իր անդուլ ջանքերով կերտել երբևէ եղած ամենակատարյալ հասարակարգը և վայելել նրա ճոխ բարիքները։*

*Հանդիսանալով ՍՄԿՊ-ի անձնվեր ու հավատարիմ օգնականը, սովետական երիտասարդության ավանգարդ լենինյան կոմերիտմիությունը փառավոր ուղի է անցել կոմունիզմի հաստատման համար մղվող պայքարում։ Կոփվելով դասակարգային գոռ մարտերում, քաղաքացիական կռիվների, Հայրենական պատերազմի խրամատներում և սոցիալիստական աշխատանքի հերոիկայի հեղափոխիչ մթնոլորտում՝ կոմերիտմիությունն իր մասսայական սխրանքներով դաստիարակել է միլիոնավոր մարդկանց, որոնք ընթանալով պարտիայի դրոշի ներքո, ամբողջ ժողովրդի սերն ու համակրանքն են նվաճել։*

*Կոմունիզմի և՛ պրակտիկան, և՛ տեսությունն իրենց ծագման սկզբից գտնվում են անվերջ կատարելագործման ու զարգացման ընթացքում։ Ուստի և միանգամայն հատկանշական է պարտիայի Ծրագրի այն խորիմաստ դրույթը,* **թե սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։** *Սակայն դա իրագործվելու է օր-օրի կատարելագործվող սովետական մարդու և նոր սերնդի տիտանական աշխատանքով։*

*Որքան հաջող ստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական հիմքը, այնքան արագ հանդես կգա և կզարգանա կոմունիզմի քաղաքացին։ Վերջինս որքան օժտված լինի մտավոր, բարոյական և աշխատանքային բարձր հատկություններով, այնքան հաջող և արգասալի կլինի ապագա հասարակության մեծ երկունքը։*

*Նոր կյանքի ստեղծման այդ բարդ և մեծագույն ջանքեր պահանջող պրոցեսի տեսանկյունով եթե վեր առնենք լենինյան կոմերիտմիության ներկա դերը, ապա այն ավելի վեհ և առավել պատասխանատու կերևա։ Այդ հանգամանքն առանձին ուժգնությամբ ընդգծվեց թե՛ պարտիայի XXII և թե՛ ՀամԼԿԵՄ XIV համագումարների որոշումներում։*

*Հայտնի է, որ ժողովրդի ծոցից ծնվող նոր մարդը կոմունիստական հասարակության կառուցումը գլուխ բերելու համար, կենսականորեն կարիք ունի պարտիայի ղեկավարության, ինչպես և կառավարության, հասարակական բոլոր կազմակերպությունների ամենօրյա և անմիջական աջակցության։ Ահա*



digitised by A.R.A.R.@

թե ինչու այժմ ինչպես կոմերիտմիության, այնպես էլ մյուս կազմակերպությունների գործունեությունը գնահատելիս պարտիան ելնում է այն բանից, թե տվյալ կազմակերպությունը որչափ է աջակցում նոր կյանքի հիմքերի և նոր մարդու ստեղծման գործին:

Լինելով հաղթանակած սոցիալիստական հասարակական հարաբերությունների պտուղը, սովետական նոր մարդն առավել նորանում է կոմունիստական հարաբերությունների ծաղկման ոլորտում՝ դառնալով դրանց բուռն զարգացման սուբյեկտիվ գործոն:

## ԿՈՄՈՒՆԻԶՄՆ ՍՏԵՂԾՎՈՒՄ Է ԱՆԴՈՒԼ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

Կոմունիզմ կերտող յուրաքանչյուր մարդու սրբազան պարտականությունը հանրօգուտ աշխատանքն է: Ով իրականում անդադար տքնում է հանրության բարօրության համար, նա իր անձնական երջանկությունն է կռում, իրագործելով պարտիայի Ծրագրի պատգամը: Աշխատանքը մշտապես եղել է և կմնա մարդկության գոյատևման հիմնական աղբյուրը: Հետևաբար, որքան հորդառատ լինի այն, այնքան լիությամբ կբավարարվեն մարդկանց բազմազան պահանջմունքները:

Այս տեսանկյունից մոտենալով կոմերիտմիության գործունեությանը, անհրաժեշտ է նշել, որ երիտասարդությանը կոմունիստական աշխատասիրության ոգով դաստիարակելու ասպարեզում մեծ են նրա նվաճումները: Տնտեսության բոլոր ճյուղերում, կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում մեր երիտասարդությունը հայրենանվեր սխրանքների անհամար օրինակներ է տալիս: Այսօր Հայաստանի շուրջ 50 հազար երիտասարդներ, հասակավորների հետ ուս-ուսի՝ ընթանում են կոմունիստական աշխատանքի առաջամարտիկների ջոկատներում, իրենց օրինակով համակելով մյուս երիտասարդներին: Մեզ անսահման ուրախություն է պատճառում այն ոգևորիչ իրողությունը, երբ կոմունիզմի երիտասարդ կառուցողների հարվածային խումբն իր արժանի ավանդն է մուծում նոր հասարակության ստեղծման գործում:

Հանրօգուտ աշխատանքի ոգով դաստիարակելով երիտասարդությանը, կոմերիտմիությունը նախ և առաջ կյանքի է կոչում հազարավոր պատանիների ու աղջիկների արգասաբեր ինքնագործունեությունն ու դրանից բխող՝ ձեռներեցությունը: Առանց ստեղծագործ խիզախումների, առանց մարդկային մտավոր ու ֆիզիկական կարողությունների ճիշտ կիրառման, հնարավոր չէ նյութական բարիքների առատության ստեղծումը: Այստեղ է, որ անսպառ են երիտասարդության ստեղծարար կորովը և նրա գործնական կարողությունը, մի կարողություն, որը երբ կոմերիտմիությունը կյանքի է կոչում՝ ուղղակի հրաշքներ է ցուցաբերում:

Այս խիստ կարևոր հանգամանքն է, որ ամբողջ խորությամբ դեռևս չեն գիտակցում ինչպես պարտիական-պետական, այնպես և կոմերիտական պատասխանատու մի շարք գործիչներ: Դժբախտաբար, հաճախ կոմերիտմիության ղեկավարների ոգևորությունը մարում է դեռ չբորբոքված, և այդ բանի հետևանքով հազարավոր երիտասարդների պոտենցիալ ստեղծագործական տենչերը մնում են չիրագործված: Ահա թե ինչու ՀԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը շեշտեց, որ կոմերիտմիության ղեկավարությունը դեռևս պատշաճ հետևողականություն և գործնականություն հանդես չի բերում երիտասարդու-



թյան աշխատանքային սխրանքների, նորարարության մասսայական շարժումը կազմակերպելու ու գլխավորելու գործում:

Քանի որ կոմերիտմիությունը նորի պիոներն է, ապա նա այսուհետև ևս պետք է վառ օրինակներ տա իր մտահղացումների ու նախաձեռնությունների պրակտիկ իրագործման և արմատավորման ասպարեզում: Նկատվող թափթփվածությունը, անկազմակերպվածությունը, տարերայնությունն ու անտարբերությունը հին կյանքից մեզ հետ ընթացող ստվերներ են, որոնց առկայությունը կոմերիտմիության գործունեության մեջ հղի է լուրջ վտանգներով: Ոչ թե մարել, այլ պետք է ավելի բորբոքել ՍՄԿՊ XXII համագումարի հարուցած աշխատանքային պաթոսը, կազմակերպել և ամուր ոտքի հանել երիտասարդության բոլոր խմբերին, բոլոր խավերին՝ կոմունիզմի մեծ Ծրագրի կենսագործման համար: Սա է օրվա պահանջը:

Սահմանելով կոմունիզմի կառուցման մեր կոնկրետ ուղին, պարտիան ընկեր Խրուշչովի շուրթերով բոլորին զգուշացրեց, որ կոմունիզմը կարող է ստեղծվել միայն աշխատանքի բարձր արտադրողականությամբ, միայն աշխատավորական զանգվածների կազմակերպված, ռացիոնալ և անդուլ աշխատանքով: Աշխատանքն է ստեղծում կոմունիզմը, որն իր հերթին ձերբազերծում է աշխատանքն ամեն կարգի կաշկանդումներից, վերջինիս ընձեռելով բուռն ծաղկման մեծ հնարավորություններ:

Մեր զարգացման տեսակետից այժմ վճռական նշանակություն ունի աշխատանքի բոլոր պրոցեսների այնպիսի կազմակերպումը, որն իրոք ապահովի աշխատունակ բոլոր մարդկանց պոտենցիալ ունակությունների առավելագույն օգտագործում: Սա է հասարակական հարստության մշտական և անսպառ աղբյուրը, որի հարատևության մեջ մեծ դեր է վերապահված երիտասարդությանը:

## ԱՇԽԱՏԱՆՔԸ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԳՈՐԾՈՆՆ Է

Աշխատանքն է ստեղծել մարդուն, մի առիթով նկատել է Ֆ. Էնգելսը: Ուրեմն, մարդու կատարելագործման, նրա մարդկայնացման և լինելության ընթացքի վրա իր վճռական կնիքն է դնում աշխատանքային գործունեությունը,— որի հրաշագործ դերն իր վեհությամբ և կարողությամբ ծաղկում է միայն սոցիալիզմի օրոք: Աշխատանքի պրոցեսն այն քուրան է,— մանավանդ երբ այն հանրօգուտ է,— որն ուժգնապես և հարատևորեն ներգործում է մարդու ֆիզիկական և հոգեկան աշխարհի վրա, կոփում նրան ստեղծագործելու, հնարելու և նպատակին հասնելու ոգով: Հասարակության բարօրության համար թափված աշխատանքը, ոչ միայն ազնվացնում է մարդուն, այլև նրան դարձնում է մտքով հարուստ, վճռական, կոլեկտիվիստ և մարդասեր: Մարդկային բնավորության բոլոր դրական գծերը մենք պարտական ենք ամենից առաջ բարեբար աշխատանքի ներգործությանը: Ահա թե ինչու պարտիայի Ծրագիրը պահանջում է մեր ամբողջ մատաղ սերնդի դաստիարակության մշտական գործոնը դարձնել հանրօգուտ աշխատանքը:

Այժմ մենք ականատես ենք այն իրադարձությանը, երբ միլիոնավոր երիտասարդներ կոփվեցին սոցիալիստական շինարարության մեծ առօրյայի աշխատանքային պրոցեսներում և դարձան կոմունիստական հասարակության առաջմղիչ ուժը: Շահագործումից ազատագրված մասսաների վիթխարի ջան-



digitised by A.R.A.R.@

քերում է ստեղծվել սոցիալիստական հասարակությունը: Այսօր մեր աչքի առջև մարդկային աշխատանքը գիտության ու տեխնիկայի մեծ հաջողությունների շնորհիվ գնալով հեշտանում և պարզանում է: Կրճատվում են երբեմնի հազարների հասնող պրոֆեսիաները, նոր մարդը հանդես է գալիս որպես մի շարք ունակությունների տեր, որովհետև այժմ համեմատաբար քիչ ջանքեր են պետք շատ պրոֆեսիաներ ունենալու համար:

Հատկանշական է այն, որ սոցիալիստական մրցությունը որպես բարձր գիտակցականության դրսևորում վաղուց խոր կերպով թափանցել է սովետական մարդկանց կենցաղի մեջ: Մրցելով միմյանց հետ, իրականում նրանք կռում են բոլորի երջանկությունը: Մինչդեռ ստուգումը ցույց տվեց, որ Հայաստանի կոմերիտմիության և տնտեսական ձեռնարկությունների մի շարք ղեկավար աշխատողներ դեռևս պատշաճ ուշադրություն չեն հատկացնում երիտասարդների շրջանում ծավալվող սոցիալիստական մրցությանը: Դեռ ավելին, որոշ դեպքերում ոչ բոլոր կոմերիտականներն են մասնակցում այդ մեծ նախաձեռնությանը: Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի 265 կոմերիտականներից կոմունիստական աշխատանքի շարժմանը մասնակցում է միայն 65-ը. իսկ ֆրեզերային հաստոցների գործարանի 350 կոմերիտականներից՝ 12-ը:

Իհարկե, չի կարելի հաշտվել այն դրության հետ, երբ սոցիալիստական մրցության արդյունքները գնահատելիս ամենևին հաշվի չեն առնում մրցող երիտասարդների կենցաղավարության, նիստ ու կացի և առհասարակ բարոյական կերպարի հանգամանքները: Մյուս կողմից, մի շարք ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների երիտասարդների միջև ընթացող մրցումը տառապում է կազմակերպական լուրջ թերություններով և հաճախ մատնված է ինքնահոսի: Բազմաթիվ բրիգադաներ մինչև հիմա չունեն կոնկրետ և անհատական պարտավորություններ, իրականում շատ դեպքերում բացակայում է մրցման արդյունքների սիստեմատիկ ստուգումը և հրապարակումը: Այս ամենը խոսում է այն մասին, որ պարտիական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները ինչպես հարկն է չեն ղեկավարում սոցիալիստական մրցությունը:

Անհրաժեշտ է նշել, որ մեր մամուլն իրականում անբավարար է լուսաբանում երիտասարդ բանվորների ու բանվորուհիների, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների կոմունիստական աշխատանքի հիանալի օրինակները: Կարևոր է, որպեսզի պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունների բյուրոները, ինչպես և տնտեսվարները և արհմիութենական կազմակերպություններն այսուհետև ավելի սիստեմատիկ և գործնականորեն ղեկավարեն երիտասարդության սոցիալիստական մրցությունը:

Կոմերիտական աշխատողների, ինչպես և պարտիական ղեկավար ընկերների և ձեռնարկությունների դիրեկտորների ուշադրությունը պետք է հրավիրել այն բացասական հանգամանքի վրա, որ այսօր զգալի թվով կոմերիտականներ ու երիտասարդներ չեն կատարում որևէ հանրօգուտ աշխատանք, շարունակում են պորտաբույծ կյանք վարել և, պատահական չէ, որ այդ տարրերի նշանակալի մասը բռնում է հանցագործության վտանգավոր ուղին: Չաշխատող կոմերիտականների և երիտասարդների կեսից ավելին ապրում է Երևան քաղաքում. սրանց մեջ կան միջնակարգ և տեխնիկումներն ավարտած պատանիներ ու աղջիկներ:



Հանրօգուտ աշխատանքից խույս տալու երևույթներ ենք նկատում նաև գյուղերում: Այս առումով տարօրինակ է Ուզունլարի պարտիական կազմակերպության անտարբեր վերաբերմունքն այն փաստի նկատմամբ, որ 150 կոմերիտականներից արտադրության մեջ աշխատում են ընդամենը 48 հոգի: Նման անմխիթար վիճակ գոյություն ունի Էջմիածնի շրջանի Լենինի անվան սովխոզում, որտեղ 144 կոմերիտականներից արտադրության մեջ զբաղված են ընդամենը 44 հոգի: Այս իրողությունից բխում է այն, որ անհրաժեշտ է պարտիական, պետական, տնտեսական և արհմիութենական օրգանները լրջորեն զբաղվեն երիտասարդներին հանրօգուտ աշխատանքի ներգրավելու հարցով:

Պետք է ընդգծել, որ ռեսպուբլիկայի շինարարությունը և գյուղատնտեսական արտադրությունը մեծապես կարիք ունեն աշխատող ուժերի: Հայտնի է, որ մինչև օրս մեր քաղաքների շինարարական տրեստները մեծ թվով բանվորներ են բերում գյուղից և այդպիսով զգալի վնաս հասցնում գյուղատնտեսական արտադրությանը: Եվ այս այն դեպքում, երբ քաղաքներում զգալի թվով ֆիզիկապես առողջ և կրթված երիտասարդներ թափառում են փողոցներում և հանրային այգիներում:

Կոմերիտական կազմակերպությունները, ինչպես և մամուլը պետք է ամբողջ հասարակայնությանը վճռական պայքարի հանեն պորտաբույծ տարրերի դեմ, որոնք վայելում են բարիքները, առանց հանրօգուտ աշխատանք թափելու: Այս առնչությամբ կշտամբանքի խոսք պետք է ասել նաև նրանց հասցեին, ովքեր համառորեն պահանջում են իրենց տրամադրել նոր բնակարաններ, սակայն խուսափում են բնակարանային կառույցներում աշխատելուց:

ՀԿՊ Կենտկոմի պլենումը մի անգամ ևս ընդգծեց պարտիայի Ծրագրի այն դրույթը, որ հանրօգուտ աշխատանքն է մատաղ սերնդի դաստիարակության վճռական գործոնը: Ուրեմն, այդ գործոնի լավագույն օգտագործմանն ու զարգացմանը պետք է նվիրվի պարտիական կազմակերպությունների, քաղկոմների և շրջկոմների հոգատարությունը: Հասնել այն բանին, որպեսզի կենցաղի մեջ մտնի պարտիայի պատգամը՝ ով չաշխատի, նա չի ուտի. ահա թե որն է երիտասարդության կոմունիստական դաստիարակության կարևորագույն խնդիրներից մեկը:

Ինչպես ցույց է տալիս կյանքը, մեր տնտեսվարների զգալի մասը, դժբախտաբար, դեռ չի ըմբռնում այն ճշմարտությունը, որ առանց տեխնիկական պրոգրեսի լայն կիրառման, հնարավոր չէ արդյունավետ օգտագործել և դաստիարակել աշխատավոր երիտասարդությանը: Մի շարք գործարաններում և ձեռնարկություններում նկատվող բանվորական ուժի հոսունությունը մեծապես խանգարում է աշխատավորների նորմալ դաստիարակությանը և իջեցնում աշխատանքի արտադրողականությունը:

Անտարակույս լուրջ աշխատանք է պահանջվում երիտասարդության շրջանում թե շինարարության և թե գյուղատնտեսական աշխատանքի նկատմամբ իրական սեր զարգացնելու համար:

## ՎԵՐԱՑՆԵԼ ԷԱԿԱՆ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Կոմերիտական աշխատանքի ներկա վիճակը ցույց է տալիս, որ պարտիական ղեկավարությունը միշտ չէ, որ այս խնդրում կանգնած է իր բարձրության վրա: Բանն այն է, որ պարտիական կազմակերպությունները, քաղկոմներն ու



digitised by A.R.A.R.@

շրջկոմները կոմերիտմիության ղեկավարության գործում հաճախ հանդես են բերում ձևականություն, մերթ անտարբերություն և ոչ կոնկրետություն։ Այլ կերպ չի կարելի բացատրել այն, երբ կոմերիտական կազմակերպության աճը բանվոր-կոլտնտեսային երիտասարդների հաշվին ընթանում է անբավարար կերպով։ Իսկ դա նշանակում է, որ պարտիական և կոմերիտական կազմակերպությունների գործունեությունն այդ բնագավառում անբավարար է։ Թափանցել երիտասարդական կոլեկտիվների ներսը, լինել երիտասարդ բանվորների հավաքներում, հանրակացարաններում, զրուցել նրանց հետ հրատապ հարցերի մասին, կազմակերպել նրանց ուսումն ու կյանքը. սա հրամայական պահանջ է բոլորիս համար։

Չի կարելի նորմալ համարել, երբ երիտասարդական կազմակերպությունների, բրիգադների առջև պարտիական կազմակերպությունները չեն դնում կոնկրետ խնդիրներ և խստապահանջության փոխարեն հանդես են բերում յոլա տանելու տրամադրություն։ Այս տեսակետից միանգամայն անբավարար է երիտասարդության մեջ տարվող աշխատանքը Երևան քաղաքի Լենինյան շրջանում (որտեղ 16 հազար կոմերիտականների կեսը գործում է արդյունաբերական ձեռնարկություններում)։ Շրջանի մի շարք ձեռնարկություններում (Հայէլեկտրագործարան, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, պոլիվինիլացետատ, ավտոպահեստամասերի և այլ գործարաններ) երիտասարդների մի մասը դեռ ներգրավված չէ իրենց ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականությունը և աշխատանքի կուլտուրան բարձրացնող ձեռնարկումներին։

Պարտիայի Երևանի Լենինյան շրջկոմի թույլ աշխատանքով պետք է բացատրել այն բնորոշ իրողությունը, որ շրջանի մի շարք ձեռնարկություններում երիտասարդները թույլ են տալիս աշխատանքային կարգապահության կոպիտ խախտումներ, մի հանգամանք, որը պարտիական ղեկավար ընկերներին և բոլոր տնտեսվարներին պետք է ստիպի մտածված միջոցներ ձեռք առնել երիտասարդությանը լիովին ներգրավելու հանրօգուտ աշխատանքի ստեղծագործական ոլորտում և ստեղծելու նպաստավոր պայմաններ նրանց ունակությունների զարգացման համար։

Այստեղ պետք է պարզորոշ ասել, որ մի շարք ձեռնարկություններում տնտեսվարների անշնորհքության, անկարողության և անբարյացակամության հետևանքով հաճախ չեն ստեղծվում երիտասարդների համար աշխատանքի պատշաճ պայմաններ։ Այս առումով աչքի է զարնում Երևանի շոգեքարշային դեպոյի վիճակը, որտեղ շոգեքարշային և, հատկապես, կոմերիտական երիտասարդական բրիգադների համար չկան աշխատանքային նորմալ պայմաններ։ Ալավերդու շինմասում ևս այս ուղղությամբ աչք ծակող թերություններ կան։ Կարելի է մի շարք օրինակներ բերել, թե ինչպես մեր ձեռնարկությունների և կառույցների որոշ ղեկավարներ դատապարտելի անտարբերություն են դրսևորում երիտասարդ աշխատողների կենցաղային կարիքների և աշխատանքային պայմանների նկատմամբ։ Մինչև վերջերս Հայքիմարդշին տրեստի և Անդրտրանսշին վարչության ղեկավարները չեն ըմբռնել այն ճշմարտությունը, որ մեր օրերում աշխատանքի արտադրողականության բարձրացումը կախված է նաև աշխատողների կենցաղային պայմաններից։ Նրանք չեն հասկացել, որ իրենց բանվորների հանրակացարաններում եղած կեղտոտությունը, հակասանիտարական վիճակը և կենցաղային տարրական պարագաների բա-



ցակայությունը ոչ միայն խանգարում են արտադրության պլանների կատարմանը, այլև կասեցնում են նոր մարդու դաստիարակության գործը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում աշխատավորների կենցաղի հարցը ամենևին էլ մանրուք չէ։ Կենցաղն այն օրրանն է, որում ապրող մարդը սովորում է ոչ միայն հանգստանալ և վայելել իր կյանքի բարիքները, այլև վարժվել հասարակական աշխատանքի կանոններին և հանրակեցության նորմերին։ Ուստի սխալվում են այն տնտեսվարները, որոնք բանվորներին նայում են միայն մի կողմից՝ որպես արտադրության վճռական գործոնի, մոռանալով, որ այն կազմված է հոգեկան, բարոյական, ֆիզիկական, էսթետիկական և մարդկային բազմաթիվ այլ հատկությունների ամբողջությունից, հատկություններ, որոնց անտեսումը թանկ է նստում հենց այդ վճռական գործոնի զարգացման և, վերջին հաշվով, արտադրության արդյունքների ավելացման վրա։

Ժամանակն է, որ ձեռնարկությունների մեր ղեկավարները լիովին փոխեն իրենց վերաբերմունքը տնտեսության վճռական գործոնի՝ արտադրող երիտասարդների նկատմամբ և ջանք չխնայեն նպաստելու նրանց բազմակողմանի պահանջմունքների օրինական բավարարմանը։

Ինչպես վերևում նշեցինք, ՀԼԿԵՄ կազմակերպության ղեկավարության գլխավոր թերություններից մեկը անհետևողականությունն է, որը սառեցնում է երիտասարդության շիկացած ոգևորությունը և թևաթափ անում երիտասարդ էնտուզիաստներին։ Այսպես, օրինակ, Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը 1961 թվականը հայտարարեց արտադրության խոտանի կրճատման և անարտադրողական ծախսերի նվազեցման համար կազմակերպվող կոմերիտական արշավի տարի։ Սակայն իրականում այդ մրցությունը մնաց թղթի վրա։ Ոչ ոք հանձն չառավ այդ մեծախոստում մտահղացումը իրագործել։ ՀԼԿԵՄ Կենտկոմն անբավարար ղեկավարություն ցուցաբերեց նաև մի շարք խոշոր շինարարությունների շեֆության բնագավառում (Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատ, ջերմային էլեկտրակայաններ և այլն)։ Իրենց շեֆական պատվավոր պարտականությունը պատվով չկատարեցին կոմերիտմիության Կենտկոմը, քաղաքային ու շրջանային կոմիտեները։ Կոմերիտական կազմակերպությունները խիստ թուլացրին իրենց ջանքերը՝ շարունակելու արտաշատցիների «Հարուստ հեկտարի համար» նախաձեռնած օգտակար շարժումը։ Այս ամենը չպետք է կրկնվեն։

Երիտասարդության եռացող եռանդի կազմակերպումն ու գլխավորումը, նրանց ստեղծագործ նախաձեռնության հրահրումը ինչպես կոմերիտական, այնպես էլ պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է։

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒՆ ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ

Սոցիալիստական արտադրությունն ինքնանպատակ չէ։ Այն զարգանում և ծաղկում է սոցիալիստական հասարակարգի բոլոր քաղաքացիների պահանջմունքները բավարարելու համար։ Եվ քանի որ այդ բավարարումը պայմանավորված է նաև նրանց մտավոր, բարոյական, կուլտուրական և ֆիզիկական կարողությունների մակարդակով, ապա պարզ է, որ կոմունիզմ կառուցող հասարակության համար վճռական նշանակություն ունի նոր մարդու ստեղծումը և կատարելագործումը։ Երիտասարդության կոմունիստական դաստիա-



digitised by A.R.A.R.@

րակության բովանդակությունը պետք է հագեցած լինի այն մեծ գաղափարով,
որ կոմունիզմի քաղաքացին կարող է անձնական երջանկություն ձեռք բերել
միայն ամբողջ հասարակության երջանկության դեպքում։ Բազմակողմանիո-
րեն զարգացնելով յուրաքանչյուր անհատի անձնական արժանիքները, կոմու-
նիզմը նյութական ծաղկած բարօրության կհասնի միայն անհատների թափած
աշխատանքի մինչև օրս չտեսնված արտադրողականությամբ, նրանց բարձր
գաղափարայնությամբ և կուլտուրականությամբ։ Եվ ահա, կոմերիտմիությունը,
որը կոչված է իր գործունեության վառ օրինակներով ողջ երիտասարդությանը
համակելու մեր լուսավոր կյանքի պաթոսով՝ հատուկ պարտավորություններ
ունի սովետական դպրոցի նկատմամբ, որտեղ ձևավորվում է նոր մարդը։

Չնայած դպրոցական կյանքում ձեռք բերած զգալի նվաճումներին, կո-
մերիտական կազմակերպությունները համենայնդեպս տակավին քիչ են օգնում
մանկավարժական կոլեկտիվներին՝ հասնելու աշակերտների լուրջ առաջադի-
մության, ամրապնդելու նրանց կարգապահությունը, ավելի հաջող կազմակեր-
պելու դպրոցականների արտադրական ուսուցումը և այլն։ Մենք չենք կարող
անտարբեր անցնել այն փաստի կողքով, երբ ռեսպուբլիկայի դպրոցներում
յուրաքանչյուր ութերորդ աշակերտը անբավարար գնահատական ունի։

Մեզ նմանապես չի կարող չանհանգստացնել այն իրողությունը, երբ զգալի
թվով պատանիներ դուրս են մնացել դպրոցներից։ Կարծում ենք, որ այս իրո-
ղությունները պետք է լրջորեն մտահոգեն Երևան, Էջմիածին, Հոկտեմբերյան
քաղաքների և Թալինի շրջանի պարտիական, կոմերիտական կազմակերպու-
թյունների ղեկավարներին, ինչպես և ժողովրդական կրթության օրգաններին։
Ինչպես երևում է, ոմանք դեռևս չեն գիտակցում, որ պատանիների պարա-
պությունը հետագայում վերածվում է հասարակական մեծ չարիքի։ Եվ, եթե
նոր սերնդի դաստիարակությամբ մտահոգված ընկերները սիստեմատիկ զբ-
բաղվեն այդ հարցի լուծմամբ, ապա հնարավոր կլինի ժամանակին կանխել
շատ ցավալի երևույթներ։

Կոմերիտմիության քաղկոմները և շրջկոմները պարտիական օրգանների
անմիջական աջակցությամբ պետք է կոնկրետ և լուրջ միջոցառումներ մշակեն
այս ուսումնական տարում դպրոցական հասակի բոլոր պատանիներին կրթու-
թյան ցանցում ներգրավելու համար։

Կոմերիտական կազմակերպությունները լուրջ անելիքներ ունեն նաև բու-
հական ուսանողության շրջանում։ Պարտիական և կոմերիտական կազմակեր-
պությունները պետք է հաշվի առնեն այն հանգամանքը, որ բուհերում քաղա-
քական դաստիարակության ձևերն ու մեթոդները պետք է առավելագույն չա-
փով նպաստեն ուսանողների ինքնագործունեության և ինքնուրույն աշխատան-
քին։ Հատկապես պետք է մտահոգվել ճիշտ կերպով լուծելու բուհերի առաջին
կուրսեցիների ուսման և արտադրական պրակտիկայի զոդման հարցը։ Ինչպես
երևում է, բուհական ղեկավարների ուշադրությունից վրիպում է այս կարևոր
հանգամանքը, որի ճիշտ լուծումից կախված է ուսանողի առաջադիմությունը։
Ուստի անհանդուրժելի է, երբ լուրջ թերություններ կան ուսանողների արտա-
դրական ուսուցման և արտադրական պրակտիկայի բնագավառում։

Այս երևույթը նշանակալի չափով բացատրվում է ձեռնարկությունների և
կառույցների (Երևանի սարքաշինական, կոմպրեսորների, ավտոդողերի, ժա-
մացույցի և այլ գործարաններ) որոշ ղեկավարների բյուրոկրատական վերա-
բերմունքով. նրանք դեռևս չեն կարողանում ինչպես հարկն է կազմակերպել



ուսանողների արտադրական պրակտիկան, չեն դիտում այն որպես ուսման
պրոցեսի շարունակություն, որի հետևանքով ուսանողները հաճախ աննպատա-
կահարմար են ծախսում իրենց ժամանակը։ Մյուս կողմից այդ տնտեսվարները
ուղղակի անտարբեր են երիտասարդների կյանքի ու դաստիարակության նը-
կատմամբ։ Ժողտնտխորհի ղեկավարները պետք է կոնկրետ միջոցառումների
դիմեն արմատապես բարելավելու ուսանողների արտադրական պրակտիկան։

Անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի Պետպլանը և Բարձրագույն ու միջնա-
կարգ մասնագիտական կրթության կոմիտեն, Ժողտնտխորհը, մինիստրու-
թյունները, ինչպես և բուհերի ղեկավարները կոնկրետ միջոցառումներ մշակեն
ուսանողների արտադրական պրակտիկան ռացիոնալ կերպով վարելու համար։

Ո՛չ միայն կոմերիտմիությունը, այլև բուհական պարտիական կազմակեր-
պությունները և դասախոսական կազմը չեն անում ամեն ինչ, որպեսզի բու-
հական ուսանողության շրջապատից խպառ արմատախիլ արվեն հակահա-
սարակական և պորտաբուծության երևույթները։ Գաղտնիք չէ, որ բժշկական
ինստիտուտի որոշ շրջանավարտներ հրաժարվում են շրջաններ մեկնել իրենց
մասնագիտությամբ աշխատելու համար։ Այս հանգամանքը խոսում է այն մա-
սին, որ բուհական դասախոսներն առհասարակ և, հասարակագիտական ա-
ռարկաներ ավանդողները հատկապես, անբավարար աշխատանք են տանում
ուսանողության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ։

Դժբախտաբար դասախոսների զգալի մասը, ինչպես և ռեսպուբլիկայի
պարտիական, պետական և գիտական-մանկավարժական պատասխանատու
ընկերները հազվագյուտ հյուրեր են դպրոցներում և ուսանողական հանրակա-
ցարաններում։ Մինչդեռ ժամանակն է, որպեսզի ռեսպուբլիկայի ինտելիգեն-
ցիան ամբողջապես լծվի սովորող երիտասարդության կոմունիստական դաս-
տիարակության գործին։ Այդ նպատակով պարտիայի քաղկոմները և շրջկոմ-
ները պետք է մեծ օգնություն ցույց տան կոմերիտական կազմակերպություն-
ներին։

Վերացնել դպրոցներում և բուհերում երիտասարդության քաղաքական
դաստիարակության ասպարեզում եղած էական թերությունները՝ պարտիական
ու կոմերիտական բոլոր օղակների անմիջական պարտականությունն է։

Չի կարելի այստեղ չնշել պարտիական և կոմերիտական կազմակերպու-
թյան ղեկավարության հոգատարության առարկա հանդիսացող մի կարևոր
բնագավառ ևս. դա երիտասարդության ժամանցի կազմակերպումն է։ Սովե-
տական տաղանդավոր և համակողմանիորեն զարգացող երիտասարդության
պահանջմունքները բարդ են և բազմազան։ Անտեսել այդպիսիք, նշանա-
կում է վանել երիտասարդությունը պարտիայի և կոմերիտմիության ազդեցու-
թյունից։ Ընդհակառակը, խելոք և ծրագրված կերպով նոր սերնդի հանգստի
վարումը մեր պարտականությունն է։ Երիտասարդն ունի այնքան կորով, որ
կարող է ո՛չ միայն լավ աշխատել, այլև իր ավյունի մի մասը գործադրել հա-
ճոյալի սպորտի, խաղերի, պարերի, զբոսանքների, էքսկուրսիաների, մրցում-
ների և այլ հանդիպումների ընթացքում։

Լավ աշխատողը պետք է սովորի և լավ հանգստանալ,— ասում էր Լենինը։
Մինչդեռ մեզ մոտ, դժբախտաբար, դեռևս պակասում է խելոք հանգստի կուլ-
տուրան։ Դեռ ավելին, այն ոմանց մոտ երբեմն ավարտվում է կոնծաբանու-
թյամբ և տուրուդմբոցներով։ Կազմակերպել երիտասարդների և աշխատա-
վորների հանգիստը, դա նշանակում է մեծապես խթանել կոմունիզմի նյու-



digitised by A.R.A.R.@

թատեխնիկական բազայի արագ կառուցմանը։ Պայքարելով սպորտում տեղ գտած հակահասարակական արարքների դեմ, կոմերիտմիությունը կհասնի այն բանին, որպեսզի սովետական սպորտը իսկապես վերածվի նոր մարդու դաստիարակության լավագույն միջոցի։

Մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործը մեծապես կշահի, եթե պարտիական կոմիտեները կոմերիտմիությանը ցուցաբերած ղեկավարության հարցում մեկընդմիշտ հրաժարվեն անցյալի անկենդան մեթոդներից և ամեն ինչ չվերածեն հաշվետվություններ լսելու։ Դրա հետ մեկտեղ պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները իրենց գլխավոր հոգսը պետք է դարձնեն թափանցել երիտասարդության կյանքի բոլոր ոլորտները։ Չի կարելի նորմալ համարել, երբ պարտիական ղեկավար աշխատողները հազվադեպ են հանդես գալիս կոմերիտական կադրերի առջև քաղաքական և այլ զեկուցումներով։ Պարտիական, սովետական և տնտեսական ղեկավարները կոմերիտականների, երիտասարդների առջև հազվադեպ են դնում տնտեսության կամ կուլտուրայի զարգացման կոնկրետ խնդիրները։

Իհարկե, մենք չենք կարող ժխտել այն փաստը, որ պարտիայի քաղաքային ու շրջանային շատ կոմիտեներ, սկզբնական պարտիական կազմակերպություններ վերջերս հաճախ լսել են կոմերիտական կազմակերպությունների հաշվետու զեկուցումները, քննարկել են կոմերիտմիության նկատմամբ պարտիական ղեկավարման հարցեր։ Սակայն փաստն այն է, որ մի շարք դեպքերում այդ ամենը կրում է ձևական բնույթ և ընդունված որոշումները մեծ մասամբ մնում են թղթի վրա։

Կոմերիտական կազմակերպություններին ցուցաբերվող ձևական և շաբլոն մոտեցման փաստեր ենք տեսնում պարտիայի Ախուրյանի, Արթիկի և մի շարք այլ շրջանների շրջկոմների գործունեության մեջ։ Անդրադառնալով այս խնդրին, Կենտկոմի պլենումը պահանջեց պարտիական բոլոր կազմակերպություններից՝ հրաժարվել թղթային ղեկավարությունից և ամենօրյա կենդանի մասնակցությամբ, ցուցումներով և միջամտությամբ օգնել կոմերիտական կազմակերպություններին։

Կոմերիտմիության և երիտասարդության պարտիական ղեկավարության արմատական բարելավումը Հայաստանի Կոմունիստական պարտիայի կարևորագույն խնդիրն է։ Ահա թե ինչու ՀԿՊ Կենտկոմի պլենումն ընդգծեց, որ ինչպես կոմերիտմիության, նույնպես և ամբողջ երիտասարդության դաստիարակության հիմքում առաջիկա տարիներին պետք է դրված լինեն պարտիայի Ծրագիրը և ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, փաստաթղթերը։ Այստեղ կոմերիտմիության և պարտիական կազմակերպությունների անելիքները թե՛ մեծ են, և թե՛ պատասխանատու։ Հենց այս ասպարեզում էլ պարտիական կազմակերպություններն ունեն անսահման մեծ հնարավորություններ ամենօրյա օգնություն ցույց տալու ԼԿԵՄ կազմակերպություններին։

## ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Պարտիան արդի էտապում գաղափարական աշխատանքում գլխավորն է համարում՝ բոլոր աշխատավորներին դաստիարակել բարձր գաղափարայնու-



թյան և կոմունիզմի նկատմամբ նվիրվածության, աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, լիովին հաղթահարել բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկները, բազմակողմանիորեն, ներդաշնակորեն զարգացնել անհատին, ստեղծել հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն։ Պարտիան առանձնահատուկ նշանակություն է տալիս աճող սերնդի դաստիարակությանը։

ՍՄԿՊ ծրագրային այս գաղափարով պետք է տոգորված լինի լենինյան կոմերիտմիության քաղաքական դաստիարակչական յուրաքանչյուր մեծ թե փոքր միջոցառում։ Նրա պատվավոր կոչումն է՝ դաստիարակել բոլոր երիտասարդներին կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի վեհ սկզբունքներով, մի խնդիր, որի լուծումն ամենուր և միշտ պետք է ստուգվի երիտասարդների աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, գյուղատնտեսական մթերքների առատության ապահովմամբ, երիտասարդների գիտակցականության ու բարքերի հարաճուն վերելքով։

Կոմունիստական բարոյականությունն ամենակատարյալ և ամենամարդկային բարոյականությունն է, որի հիմքում դրված է մեկն ամենքի, ամենքը մեկի համար սկզբունքը։ Պարտիայի Ծրագրի այս պատգամի անշեղ կիրառումը երիտասարդների կողմից կհանդիսանա նոր հասարակության կառուցման կարևորագույն երաշխիքը։ Այժմ արդեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում ակներև նկատվում է այդ սկզբունքի վերափոխիչ դերը մարդու մտավոր վերածնության գործում։

Հետևողականորեն պրոպագանդելով և իր պրակտիկայում կիրառելով մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր նշանաբանը, կոմերիտմիությունը կոչված է բոլոր պատանիներին ու երիտասարդներին ներքուստ համակելու կոմունիստական բարոյականության սկզբունքներով, որոնք այսօր հանդիսանում են նոր մարդու վարքագծի անվիճելի չափանիշները։

Հիրավի, նպաստելով մարդկային անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացմանը, կոմունիստական շինարարության վերափոխիչ մթնոլորտը կսովորեցնի բոլոր քաղաքացիներին իրենց ջանքերը լիովին ի սպաս դնել ամենքի բարօրության գործին։ Միլիոնավոր մարդկանց արտադրած արդյունքներով գալիք ինքնավար կոմունիստական հասարակությունը յուրաքանչյուրին կբավարարի նրա պահանջների համեմատ, քանի որ յուրաքանչյուրը միշտ էլ կարտադրի ավելին, քան ինքն ի վիճակի է սպառելու։ Այս մեծ նպատակի իրագործման առհավատչյան արտադրողական ուժերի այն վիթխարի աճն է, որը նախատեսված է պարտիայի Ծրագրում։

Կոմունիզմի շինարարության ընթացքում որքան արագ ձևավորվի նոր մարդը՝ գաղափարով, հոգեբանությամբ և կենցաղով լիարյուն կոմունիստը, այնքան փարթամ կբարգավաճի նոր հասարակության հումանիստական հոգեբանությունը, կոլեկտիվ կամքի և հասարակության ծաղկման այդ լավագույն ազդակը։ Այստեղ ևս խոշոր դեր է վիճակված լենինյան կոմերիտմիությանը, որն ընթանալով պարտիայի ամենօրյա ղեկավարությամբ, կոչված է հոգեպես և ֆիզիկապես մարզելու ու դաստիարակելու նոր մարդուն։ Վեր է կասկածից, որ նոր սերնդի գաղափարական-քաղաքական դաստիարակության յուրաքանչյուր քայլ սերտորեն շաղկապելով կոմունիստական շինարարության բարդ խնդիրների լուծման հետ, կոմերիտմիությունը պատվով կկատարի իր դերը։

Այստեղ անհրաժեշտ է անդրադառնալ պարտիայի Ծրագրում նշված այն



digitised by A.R.A.R.@

թեզին, որ այսօր էլ մեր կյանքում դեռևս իրենց զգացնել են տալիս «հին աշխարհի էգոիստական այլասերված հայացքներն ու բարքերը»։ Ահա թե ինչու պարտիան պահանջում է մեզնից համառ և համբերատար աշխատանքով «ամբողջ բնակչությանը դաստիարակել գիտական կոմունիզմի ոգով» և մինչև վերջ հաղթահարել բուրժուական բարքերի ու մտածելակերպի մնացուկները։ Մյուս կողմից, անհրաժեշտ է ամբողջ ճակատով մեկ հարձակողական գաղափարական պայքար մղել մարքսիզմին խորթ հայացքների և բուրժուական հոգեբանության բոլոր դրսևորումների դեմ։ Անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կազմակերպությունները օգնեն կոմերիտմիությանը խելոք կերպով օգտագործելու գաղափարական ներգործության մեր բոլոր լծակները, մարդկանց կոմունիստական գիտակցությունը զարգացնելու նպատակով։

Նոր մարդը ստեղծվում է սոցիալիստական ազգերի ու ազգային ռեսպուբլիկաների աննախընթաց ծաղկման պայմաններում։ Այժմ ՍՍՌՄ-ում «ազգային հարցում գործում են փոխադարձաբար, միմյանց հետ կապված երկու առաջադիմական տենդենցներ։ Նախ՝ տեղի է ունենում յուրաքանչյուր ազգի բուռն ու համակողմանի զարգացում, ընդլայնվում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների իրավունքները։ Երկրորդ՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո տեղի է ունենում սոցիալիստական ազգերի ավելի սերտ մերձեցում, ուժեղանում է նրանց փոխազդեցությունը և փոխադարձ հարստացումը» (Ն. Ս. Խրուշչով, ՍՄԿՊ Ծրագրի մասին, էջ 109)։

Այսպիսով, մեր ողջ ժողովրդի ու երիտասարդության դաստիարակությունը պետք է ընթանա այն ոգով, որ այսուհետև ավելի զարգանան պրոլետարական ինտերնացիոնալիզմի վերոհիշյալ առաջադիմական տենդենցները։ Այսօր, ինչպես և վաղը Սովետական Միության յուրաքանչյուր ազգ սեփականում է մյուս սոցիալիստական ազգերի համամարդկային կուլտուրայի ողջ հարստությունը։ Ժամանակակից սովետական կյանքում արդեն սկսում է ձևավորվել «կոմունիստական հասարակարգի ապագա միասնական համամարդկային կուլտուրան»։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ազգային հարաբերություններն ակներևորեն թևակոխել են զարգացման մի նոր փուլ, որի բնորոշ կողմը՝ ազգերի սերտ մերձեցումն է։ Միայն քաղաքականապես կույրերը կարող են չտեսնել ազգային հարցի լենինյան լուծման փառավոր արդյունքները։

Պետք է ընդգծել, որ վերջին տարիներին անհամեմատ ծավալվել և ամրապնդվել են ռեսպուբլիկայի աշխատավորների եղբայրական կապերը ՍՍՌՄ ժողովուրդների հետ։ Սոցիալիստական մրցության, տնտեսական և կուլտուրական փոխադարձ մերձեցման նպատակով Ռուսաստանի, Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի բազմաթիվ քաղաքների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների հետ Սովետական Հայաստանի աշխատավորների սերտ կապերը լավագույն տրադիցիաների ուժ են ստացել։

Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Արտաշատի, Հոկտեմբերյանի, Շամշադինի ու մյուս շրջանների աշխատավորների պարբերական հանդիպումները եղբայրական ժողովուրդների կոլեկտիվների հետ, մեծապես օգնում են մեզ ոչ միայն նրանց առաջավոր փորձը կիրառելու իմաստով, այլև ավելի կատարելագործելու աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության ձևերն ու մեթոդները, ավելի հաջողությամբ արմատավորելու ու զար-



գացնելու ռուս, ուկրաինացի, վրացի, ադրբեջանցի և այլ ազգերի բարեկամական հարաբերություններն ու կապերը։

Պետք է տեսնել և վերապրել եղբայրական ժողովուրդների ու հայ ժողովրդի կոլեկտիվների ջերմագին հանդիպումների պահերը, այդ ինտերնացիոնալ կապերի հսկայական դաստիարակչական նշանակությունը խորապես ըմբռնելու համար։ Այդ կապերը մեր երիտասարդության ինտերնացիոնալիզմի ոգով կոփելու անմիջական և անգնահատելի միջոց են։ Ահա թե ինչու Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները, հետայսու լուրջ միջոցներ պետք է կիրառեն ավելի ծավալելու և խորացնելու այդ կապերը, որոնք գոյություն ունեն ռեսպուբլիկայի բուհական և դպրոցական երիտասարդության պրակտիկայում։

Այս բնագավառում մեծ են մամուլի, Հայֆիլմի, հրատարակչությունների, գիտական հիմնարկների և ստեղծագործական կազմակերպությունների անելիքները։ Ժամանակն է, որ Հայպետհրատը ռուսերեն և հայերեն լեզուներով տպագրի մի ստվար ժողովածու՝ նվիրված ժողովուրդների լենինյան բարեկամության մեծարժեք փորձին։

Մեր երկրում,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— տեղի է ունենում ազգերի մերձեցման պրոցես, ուժեղանում է նրանց սոցիալական համասեռությունը։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ընթացքում ձեռք կբերվի ազգերի լիակատար միասնություն։ Բայց այն բանից հետո էլ, երբ կոմունիզմը հիմնականում կառուցված կլինի, դեռ վաղաժամ կլինի ազդարարել ազգերի միաձուլման մասին։ Լենինը, ինչպես հայտնի է, մատնանշում էր, որ պետական ու ազգային տարբերությունները դեռ երկար գոյություն կունենան սոցիալիզմի հաղթանակից հետո բոլոր երկրներում (տես Ն. Ս. Խրուշչով, ՍՄԿՊ Ծրագրի մասին, էջ 112)։

Այստեղից հետևում է, որ մասսաների ինտերնացիոնալ դաստիարակությունը և պայքարը նացիոնալիստական մնացուկների դրսևորումների դեմ՝ պարտիայի և կոմերիտմիության սրբազան պարտքն է։ Կարծում ենք, ապացույցի կարոտ չէ այն ճշմարտությունը, որ ազգային սահմանափակության և բացառիկության, պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման տենդենցները լրջորեն խանգարում են ժողովրդի կոմունիստական դաստիարակության գործին և նրա ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանը։

Ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում ձեռք բերած մեր անկապտելի հաջողությունները ոչ մի հիմք չեն տալիս մատաղ սերնդի դաստիարակներին անտեսելու, որ դեռևս բուհական մի քանի երիտասարդների մոտ ազգային հարաբերությունների նկատմամբ դրսևորվում են այնպիսի տրամադրություններ, որոնք միայն ազգային սահմանափակության հետևանք են։ Ուստի, անհրաժեշտ է համառ, համբերատար և շերտավորված դաստիարակչական աշխատանք տանել երիտասարդների հետ, նրանց զինելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով։ Այստեղ մանկավարժական-դաստիարակչական աշխատանքը պետք է զուգակցել լենինիզմին խորթ տրամադրությունների դեմ մղվող անզիջող պայքարին։

Պարտիական և կոմերիտական կազմակերպությունների կենսական խնդիրն է՝ ավելի լայն դաստիարակչական աշխատանք տանել երիտասարդության շրջանում, թույլ չտալով, որ նա ենթարկվի կեղծ հայրենասիրական՝ ըստ էության ազգային սահմանափակության տրամադրություններին։



digitised by A.R.A.R.@

Լենինյան կոմերիտմիությունը հատուկ ուշադրություն պետք է դարձնի երիտասարդ սերնդի ինտերնացիոնալ կապերի զարգացման, նրան սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործի վրա։

Նոր մարդու ձևավորման գործում խոշոր դեր է վերապահված էսթետիկական դաստիարակությանը, որը կնպաստի մարդկանց կուլտուրական հակումների ու գեղարվեստական բարձր ճաշակի զարգացմանը։ Չէ որ դաստիարակության բնագավառում «գեղարվեստական սկզբունքն ավելի ոգեշունչ կդարձնի աշխատանքը, կգեղեցկացնի կենցաղը և կազնվացնի մարդուն»։ Այս ասպարեզում ևս կոմերիտմիության նախաձեռնության համար մեծ և լուսավոր հորիզոններ են բացվում։

Ի դեպ, գոհունակությամբ պետք է նշել, որ վերջին տարիներս ռեսպուբլիկայում ստեղծվել են մի շարք արժեքավոր գեղարվեստական երկեր, որոնք ճշմարտացիորեն արտացոլում են կոմունիզմ կառուցողների բազմաբովանդակ առօրյան, նրանց խոհերով հարուստ ներքնաշխարհը։ Սակայն, միաժամանակ չպետք է աչքաթող անել, որ գրականության մեջ երբեմն հրապարակ է գալիս գաղափարական խոտանը, որն զգալի վնաս է հասցնում մասսաների դաստիարակության գործին։

Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակի տոնակատարությունը մեր սրտերը համակեց հպարտության օրինական զգացումով։ Սակայն ազգային հպարտությունը անհամատեղելի է ազգային սնապարծության և ազգային սահմանափակության հետ։ Մինչև օրս կան առանձին ընկերներ, որոնք խոր կերպով չեն ըմբռնել այն ճշմարտությունը, թե պարտիան բոլոր հարցերը լուծում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, լենինյան ազգային քաղաքականության դիրքերից։ Գրական մամուլի ընկերները պետք է գիտենան, որ մերթ հրապարակվող պրիմիտիվ, ազգային սահմանափակությանը տուրք տվող գործերը խանգարում են երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը։ Այդ կարգի թերացումները գրական մամուլում չպետք է կրկնվեն։ Կյանքին մոտ կանգնած լայնախոհ գրողը, սիրելով իր ժողովրդին և նրա հոգևոր արժեքները, միաժամանակ խոր հարգանք է տածում մյուս ժողովուրդների և նրանց ստեղծած կուլտուրական մեծ արժեքների նկատմամբ։

ՀԿԴ Կենտրոնական Կոմիտեի պլենումը հույս հայտնեց, որ մոտակա ժամանակներում պարտիական կոմիտեները լուրջ բեկում կմտցնեն կոմերիտմիության նկատմամբ ցույց տված իրենց ղեկավարության գործում և այդպիսով կապահովեն մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակությունը։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՁԵՎՆ Է

## Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կոմունիզմն արդեն մարդու հեռավոր երազանքը չէ, այլ մեր Հայրենիքի՝ մեր աչքի առաջ և մեր աշխատանքում ծնունդ առնող վաղվա լուսավոր օրը։ Հասարակական կյանքի բոլոր ոլորտներում արդեն երևում են կոմունիզմի մատաղ ծիլերը, որոնք հնարավորություն են տալիս գիտական ճշտությամբ պատկերացնելու թե ինչպիսին կլինի կոմունիզմը։

«Կոմունիզմը,— բնորոշում է ՍՄԿՊ Ծրագիրը,— անդասակարգ հասարակարգ է արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականությամբ, հասարակության բոլոր անդամների սոցիալական լիակատար հավասարությամբ, որտեղ մարդկանց համակողմանի զարգացման հետ մեկտեղ շարունակ զարգացող գիտության և տեխնիկայի հիման վրա կաճեն նաև արտադրողական ուժերը, հասարակական հարստության բոլոր աղբյուրները լիառատ կհորդեն, և կիրագործվի «Յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը: Կոմունիզմն ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կհաստատվի հանրային ինքնավարություն, հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջ, գիտակցված անհրաժեշտություն, յուրաքանչյուրի ընդունակությունները կգործադրվեն ժողովրդի համար առավելագույն օգտավետությամբ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 483—484)։

Սակայն Ծրագիրը չի բավարարվում կոմունիզմի էության այդ ընդհանուր բնորոշմամբ։ Նա բազմակողմանի բացահայտում է կոմունիզմի՝ որպես հասարակական կյանքի կազմակերպման բարձրագույն ձևի բովանդակությունը։

### ԱՄԵՆԱԶԱՐԳԱՑԱԾ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Բացահայտելով կոմունիստական հասարակարգի բուն էությունը՝ Վ. Ի. Լենինը գրել է. «Կոմունիզմը կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ» (Երկեր, հ. 29, էջ 524)։ Աշխատանքի այդպիսի արտադրողականության հասնելու համար Լենինն, առաջին հերթին, պահանջում էր էլեկտրիֆիկացում, արտադրողական ուժերի





1116-62
ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ Гос Библиотека ՀՍՍՌ-Арм ССР
digitised by A.R.A.R.@

զարգացում, տեխնիկայի առաջադիմություն։ Մենք արդեն ձեռք ենք բերել արտադրողական ուժերի այնպիսի աճ, հասել աշխատանքի այնպիսի բարձր արտադրողականության, որոնք թույլ են տվել թևակոխելու կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Սակայն ձեռք բերված մակարդակը դեռևս չի կարող դառնալ հասարակական հարաբերությունների բարձրագույն ձևի՝ կոմունիզմի շենքի հիմքը։ Ուստի պարտիան գլխավոր տնտեսական խնդիրն է համարում մոտակա 20 տարում կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելը և դրա հիման վրա աշխարհում աշխատանքի ամենաբարձր արտադրողականության հասնելը։ Ահա թե ինչպիսին է լինելու մեր երկիրը 1980 թվականին։

...Ստեղծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, սովետական մարդիկ կենսագործել են Իլյիչի մեծ ավանդը. ավարտվել է ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը։ Երկիրը ծածկված է էլեկտրակայանների խիտ ցանցով։ Կան և հիդրոկայաններ ու ջերմաէլեկտրակայաններ, և՛ սովորական դարձած գերհզոր ատոմային էլեկտրակայաններ։ Արդեն շատ բաներ կան, որոնք անհայտ են եղել 10—20 տարի առաջ։ Դրանք ջերմամիջուկային ղեկավարելի ռեակցիայի սկզբունքով աշխատող էլեկտրակայաններն են, ջերմային, միջուկային, արեգակնային և քիմիական էներգիան անմիջականորեն էլեկտրականի վերածող կայաններ, առանց շոգեուժային կամ գազաուժային հարմարանքների։ Իրականացվում են օվկիանոսի մակընթացության ու տեղատվության ուժով աշխատող զորեղ էլեկտրակայանների նախագծերը։ Վերջապես անսպառ են ուժի պաշարները։ Չէ՞ որ մարդն իրեն է «հնազանդեցրել» ջերմամիջուկային ռեակցիայի, այսինքն՝ ջրածնային միջուկները հելիումի միջուկների վերածելու սինթեզի ռեակցիայի կարողությունը։ Մեկ լիտր ջրում ավելի մեծ ուժ է «թաքնված», քան հազար տոննա բարձրորակ բենզինում։ Հապա որքա՞ն ուժ կա օվկիանոսների ու ծովերի ջրերում, եթե երկրագունդն իր գոյության 5 միլիարդ տարում նրա նույնիսկ մեկ քառորդը չի ստացել արեգակից։

Երկրի էլեկտրիֆիկացման գործում որակական նոր թռիչք է տեղի ունեցել նաև մի այլ տեսանկյունից։ Երկրի մեծ շրջաններում դեռ 60—70-ական թվականներին ստեղծված էներգետիկ բոլոր սիստեմները միավորվել են ՍՍՌՄ էներգետիկ միասնական սիստեմում։ Ավելին՝ սկսել է ձևավորվել սոցիալիզմի ամբողջ լագերի էներգետիկ միասնական սիստեմը։ Բարձրավոլտ օդային և ստորերկրյա, փոփոխական ու հաստատուն հոսանքի մագիստրալային և հարյուր հազարավոր կիլոմետրեր ձգվող բաշխիչ ցանցերը ժողովրդական տնտեսության «կենսարար հեղուկ»—էլեկտրաուժ են տալիս մեր անծայրածիր հայրենիքի բոլոր անկյուններին։ Իսկ այդ «հեղուկից» ինչքա՞ն ուզես՝ տարեկան մոտ 2.700—3.000 միլիարդ կիլովատ-ժամ։

Ինչե՞ր չեն արվի ուժի այդպիսի հոսանքով։ Եվ մարդիկ սովորական բան են համարում տարեկան 250 միլիոն տոննա պողպատի ձուլումը, լիառատ նավթի ու գազի, սինթետիկ նոր այնպիսի նյութերի արտադրությունը, որոնք փոխարինում են մետաղներին, փայտին, քարին, բրդին, մուշտակեղենին...

Էլեկտրական ծովի ալիքները քշում տանում են արտադրության հին մեթոդները, ողողում տասնամյակների, նույնիսկ հարյուրամյակների ընթացքում հաստատուն մնացած տեխնոլոգիական պրոցեսները։ Նյութերի մեխանիկական մշակման փոխարեն արտադրության մեջ գերակշռող դեր են խաղում մշակման նորագույն էլեկտրոլիզային, էլեկտրաջերմային, էլեկտրաէրոզիական, ուլտրաձայնաալիքային, քիմիական և այլ մեթոդները։ Մասսայաբար կիրառվում են



ռադիոէլեկտրոնիկան, հեռուստամեխանիկան, ռադիոակտիվ իզոտոպները, հաշվող-վճռող մեքենաները։ Այս ամենն արմատապես փոխում է տեխնոլոգիան. արտադրության կոմպլեքսային մեքենայացումը վերաճում է կոմպլեքսային ավտոմատացման, ընդ որում, արտադրության շատ ճյուղերում ղեկավարման ու վերահսկողության ֆունկցիաները հանձնվում են հաշվող-վճռող ու ղեկավարող արագագործ հարմարանքներին։

Նյութա-տեխնիկական նոր բազան բնական օրենքի անհրաժեշտությամբ հանգեցրել է 1961 թվականի համեմատությամբ աշխատանքի արտադրողականության աճին՝ չորս-չորս և կես անգամ։ Տեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա արդյունաբերական արտադրության ծավալն աճել է վեց և նույնիսկ ավելի անգամ։ Աշխարհում այլևս ոչ մի երկիր չի կարող համեմատվել կոմունիստական հասարակարգ կառուցած երկրի՝ Սովետական Միության հետ։

Արդյունաբերության հետ մեկտեղ վիթխարի չափով զարգացել է նաև գյուղատնտեսությունը, քանի որ կոմունիզմն անհնարին է առանց բարգավաճող, համակողմանիորեն զարգացած, բարձր արտադրողականության գյուղատնտեսության։ Արտադրության մեջ գիտության արմատավորման շնորհիվ 20 տարում աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ աճել է հինգ-վեց անգամ, իսկ արտադրանքի ընդհանուր ծավալը՝ երեք և կես անգամ։

Լիության հասարակարգ, որն ի վիճակի է բավարարելու հասարակության անդամների հարաճուն, բազմակողմանի, խելամիտ պահանջմունքները, հասարակարգ, որն արդեն հասել է աշխատավորների ամենաբարձր կենսամակարդակին։

## ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ԴԱՍԱԿԱՐԳԵՐԻ, ԱՌԱՆՑ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԽԱՎԵՐԻ

Էկոնոմիկայի այդպիսի ապշեցուցիչ առաջադիմությունն անխուսափելի կդարձնի հասարակության սոցիալական կառուցվածքի փոփոխությունը։ Հաղթանակած կոմունիզմի երկրում առաջին հերթին կչնչվեն դասակարգային տարբերությունները։ «Կոմունիզմի ժամանակ,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում,— դասակարգեր չեն լինի. կանհետանան քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները. արտադրողական ուժերի զարգացման մակարդակով և աշխատանքի բնույթով, արտադրական հարաբերությունների ձևերով, կենցաղային պայմաններով—բնակչության բարեկեցության աստիճանով գյուղը կհասնի քաղաքի մակարդակին» (Նույն տեղում, էջ 484)։ Այս պրոցեսի տրամաբանությունը հետևյալն է։

Արտադրողական ուժերի զարգացմանը համապատասխան տեղի կունենա անցումը միասնական համաժողովրդական սեփականության։ Դա կհանդիսանա բանվորների ու գյուղացիների միջև հիմնականում դասակարգային բոլոր տարբերությունների վերացման վճռական պայման։ «Ոչնչացնել դասակարգերը,— գրել է Վ. Ի. Լենինը,— նշանակում է բոլոր քաղաքացիներին դնել միատեսակ հարաբերությունների մեջ ամբողջ հասարակության արտադրության միջոցների նկատմամբ» (Երկեր, հ. 20, էջ 172)։ Մեր երկրի բոլոր աշխատավորների համար հենց այդպիսի միատեսակ հարաբերություններ կառաջանան միասնական կոմունիստական սեփականության ստեղծման հետ մեկտեղ։



digitised by A.R.A.R.@

Սակայն պետք է նկատի ունենալ, որ արտադրողական ուժերի այն զարգացումը, որի շնորհիվ սոցիալիստական սեփականության երկու ձևերը միաձուլվում են միասնական կոմունիստական սեփականության մեջ, մինչև այդ պահը կհանգեցնի գյուղատնտեսության և ինդուստրիայի մարդկանց աշխատանքի կուլտուր-տեխնիկական մակարդակի, քաղաքի ու գյուղի բնակիչների կյանքի կուլտուր-կենցաղային պայմանների միջև եղած եթե ոչ բոլոր, ապա, համենայնդեպս, էական տարբերությունների հաղթահարման։ Այնուհետև, արտադրողական ուժերի հետագա զարգացմանը համապատասխան, ինչպես նշում է ՍՄԿՊ Ծրագիրը, «Կոլտնտեսային գյուղերն ու շեները հետզհետե կվերափոխվեն ու կդառնան քաղաքատիպ խոշորացված բնակավայրեր... Վերջին հաշվով կյանքի կուլտուր-կենցաղային պայմաններով գյուղական բնակչությունը կհավասարվի քաղաքային բնակչությանը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 507)։

Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ արդյունաբերության նպատակահարմար տեղադրման հիման վրա կոմունիստական շինարարության պրոցեսում ո՛չ միայն գյուղն իր զարգացմամբ կձգտի քաղաքին, այլև տեղի կունենա հանդիպական պրոցես։ Ժամանակակից քաղաքը կվերցնի այն լավը, որով աչքի է ընկնում գյուղը։ Երբ արդեն տարբերություն չի լինի գյուղատնտեսության և արդյունաբերության մարդկանց աշխատանքում, կուլտուրայում և կենցաղում, այնժամ կհաղթահարվեն նրանց միջև եղած դասակարգային բոլոր տարբերությունները։ Սակայն դեպի կոմունիզմ ընթացող հասարակության առջև կանգնած է չափազանց բարդ մի խնդիր ևս՝ ինտելիգենցիայի, իբրև սոցիալական խավի վերացումը։ «Կոմունիզմի հաղթանակով,— գրված է ՍՄԿՊ Ծրագրում,— տեղի կունենա մտավոր ու ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում մարդկանց արտադրական գործունեության մեջ։ Ինտելիգենցիան կդադարի սոցիալական առանձին խավ լինելուց, ֆիզիկական աշխատանք կատարողներն իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակով կբարձրանան մտավոր աշխատանքի մարդկանց մակարդակին» (Նույն տեղում, էջ 484)։ Դա, ինչպես տեսնում ենք, արդեն մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև եղած տարբերության վերացման պրոբլեմն է։ Եվ պարտիան մեզ ցույց է տալիս այդ ամենաբարդ խնդրի լուծման հիմնական ուղղությունը։

Այդ տարբերությունը հաղթահարելու առաջին աստիճանը կլինի ֆիզիկական ծանր աշխատանքի վերացումը։ Աշխատանքային բոլոր՝ հիմնական, օժանդակ, բեռնման-բեռնաթափման պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը կվերացնի ձեռքի ու որակյալ աշխատանքն արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և կոմունալ տնտեսության մեջ։ Տասը տարի հետո հազվագյուտ երևույթ կդառնան այժմ մեզ համար սովորական և բոլոր ձեռնարկություններում այնքան ստվարաթիվ «սևագործ բանվորները» և նույնիսկ այնպիսի «վարպետները», ինչպիսիք են՝ որմնադիրները, ծեփագործները և այլն։ Աշխատանքային բոլոր պրոցեսները կկատարեն մեքենաները։ Այլևս չի լինի ֆիզիկական ծանր աշխատանք, իսկ մտավոր աշխատանքը կդառնա աշխատանքային գործունեության անհրաժեշտ բաղկացուցիչ տարր։

Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունը հաղթահարելու հետևյալ, ավելի բարձր աստիճանը կլինի ֆիզիկական և մտավոր աշխատանքի միաձուլումը, ֆիզիկական աշխատանքի ինտելեկտուալ հարստացումը։ Արդեն մեր օրերում արտադրության շատ ճյուղերում ֆիզիկական աշխատանք կատարողն աշխատանքային ցիկլում իր ժամանակի մեծ մասը ծախսում է ոչ թե ֆիզիկական, այլ մտավոր աշխատանքի վրա՝ զանազան հաշվումներ, սարքերի օգնությամբ վերահսկման զանազան ֆունկցիաներ և այլն։ Վերցնենք, օրինակ, պողպատ ձուլողին։ «Ու—9 Ա» առավել բարդ մարկայի պողպատը ձուլելիս նրա աշխատաժամերի 72 տոկոսը զբաղված է մտավոր և միայն 28-ը՝ ֆիզիկական աշխատանքով։ Դրա պատճառն այն է, որ ժամանակակից մարտենյան հնոցները մեքենայացված են հագեցված ավտոմատիկ կարգավորման և ստուգիչ-չափիչ բազմաթիվ սարքերով։ Պողպատ ձուլողը պետք է կարողանա աշխատել այդ բարդ սարքերով, պետք է իմանա տեխնոլոգիայի բոլոր նրբությունները։



Մեքենաների, հաստոցների ավտոմատիկ սիստեմների, ավտոմատիկ գծերի, ցեխերի, ավտոմատ-գործարանների պայմաններում աշխատողները կատարում են կարգավորման, կանոնավորման, նորոգման ու ղեկավարման ֆունկցիաներ միայն։ Եվ այնտեղ ֆիզիկական աշխատանքը լիովին միաձուլված է մտավոր աշխատանքի հետ։ Աշխատանքը բոլոր ավտոմատիկ գծերի վրա արդեն պահանջում է խոր ու բազմակողմանի տեխնիկական գիտելիքներ, ինժեներական աշխատողների կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ։

Արտադրության պրոցեսի լրիվ ավտոմատացման դեպքում, երբ ղեկավարման ու կարգավորման ֆունկցիաները հանձնված են մեքենաներին՝ էլեկտրոնահաշվիչ մեխանիզմներին, աշխատողի ֆունկցիան է դառնում ամբողջ սիստեմի աշխատանքի ընդհանուր հսկողությունը, ավտոմատիկ կառավարման և հսկողության ծրագրում։ Տարբերությունները մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև վերանում են։

## ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳ Է

Տեխնիկայի առաջադիմությունը աշխատանքի բնույթի փոփոխման օբյեկտիվ հիմքն է։ Բայց աշխատողները մարդիկ են, ուստի և աշխատանքի բնույթի փոփոխման համար անհրաժեշտ է և անհատի համապատասխան փոփոխում։ Կոմունիստական արտադրությունը պահանջում է նոր մարդ, որը ներդաշնակորեն մարմնավորի հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը։ Այդ նոր մարդը ծնվում է մեր աչքի առաջ։ Նա մեր ժամանակակիցն է։ Իսկ ինչպե՞ս է ձևավորվում կոմունիստական հասարակարգի մարդը։

Ժողովրդական կրթության սիստեմը, նախադպրոցական հասակից մինչև բարձրագույն ուսումնական հաստատության շեմքը, ստեղծել է բոլոր պայմանները, որպեսզի աճող սերունդը յուրացնի տրված գիտելիքները, ընկալի կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները, ստանա աշխատանքային ու քաղաքական պատրաստություն գիտության և տեխնիկայի հարաճուն զարգացման մակարդակին համապատասխան, ըստ որում ամենուրեք հաշվի են առնվում հասարակության կարիքները, սովորողների ընդունակություններն ու ցանկությունները, ըստ այդմ էլ կազմակերպվում է նրանց բարոյական, գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակությունը։

Սոա ապագայի դպրոցները կլինեն յուրահատուկ կոմբինատներ՝ ուսումնական և բնակելի կորպուսներով, հիանալի սարքավորված աշխատասենյակնե-



digitised by A.R.A.R.@

րով ու լաբորատորիաներով, արհեստանոցներով, փորձադաշտերով ու փորձակայաններով, սպորտային բազաներով, գեղարվեստի արվեստանոցներով: Ուսուցման ու դաստիարակման այնպիսի նորագույն միջոցները, ինչպիսիք են՝ կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը, լավագույն կերպով կսպասարկեն աճող սերնդին: Արտադպրոցական, կուլտուրական, գեղարվեստական, տեխնիկական հիմնարկների լայնածավալ ցանցը կլրացնի, կընդլայնի, կխորացնի այդ սերնդի ներկայացուցիչների գիտելիքները, մտահորիզոնը, աշխարհընկալումը:

Բարի սերմերը առատ պտուղներ կտան: Աշխատանքի և ուսուցման համար պատրաստված երիտասարդները կդառնան բարձրորակ մասնագետներ: Տասնյակ միլիոնավոր մարդիկ կստանան բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն: Աշխատանքի և ուսուցման մեջ կկոփվի կոմունիզմի շինարարը: Ընդունակությունների, ձիրքերի, ձգտումների դրսևորման, զարգացման և կիրառման անսահման հնարավորությունները կբացահայտեն ժողովրդական տաղանդների մի այնպիսի հորդ աղբյուր, որն իր կենարար շիթերով կյանքի կկոչի արտադրության չտեսնված ծիլերը: Աշխատանքում բարձրագույն հաճույք կգտնի կոմունիստական հասարակության՝ հոգևոր աշխարհով հարուստ և բարոյապես մաքուր անդամը: Աշխատանքը կդառնա մարդու կենսական առաջին պահանջը:

Ստեղծագործական ավյունը, աշխատանքի հաճույքով լցուն կյանքը կդառնան կոմունիզմի բոլոր մարդկանց բաժինը: Կկենսագործվի գիտության մեծ ռահվիրա Վլադիմիր Իլյիչ Լենինի կանխատեսումը, որ «...կոմունիստական աշխատանքը անվճար աշխատանք է հասարակության օգտին, մի աշխատանք, որ կատարվում է ո՛չ թե որոշակի պարհակ կրելու համար, ո՛չ թե որոշ մթերքներ ստանալու իրավունքի համար, ո՛չ թե նախապես սահմանված և օրինականացված նորմաներով, այլ կամավոր աշխատանք, նորմաներից դուրս աշխատանք, մի աշխատանք, որը տրվում է վարձատրությունը նկատի չունենալով, առանց վարձատրության պայմանների, մի աշխատանք, որը կատարվում է ընդհանուրի օգտին աշխատելու սովորությամբ և ընդհանուրի օգտին աշխատանքի անհրաժեշտության նկատմամբ գիտակից (արդեն սովորություն դարձած) վերաբերմունքով, մի աշխատանք, որը պահանջմունք է առողջ օրգանիզմի համար» (Երկեր, հ. 30, էջ 661):

Աշխատանքի բնույթի փոփոխումը՝ աշխատանքը կենսական պահանջ, հաճույքի աղբյուր դարձնելը հասարակությանը կազատի աշխատանքի չափի վերահսկողության անհրաժեշտությունից: Բոլոր մարդիկ իրենց աշխատանքային ֆունկցիաները կկատարեն հասարակական պահանջմունքների համեմատ: Կոմունիստական հասարակարգն անարխիայի, ծուլության և անգործության հասարակարգ չէ, ինչպես ցանկանում են «ապացուցել» իմպերիալիզմի ստորաքարշ ջատագովները: Ընդհակառակը, պատմության մեջ առաջին անգամ բոլորը լրիվ չափով կաշխատեն ըստ իրենց ուժերի և ընդունակությունների: Հասարակության անդամները գիտակցաբար և ինքնուրույն կերպով կենթարկվեն աշխատանքային կարգապահությանը, կպահպանեն աշխատանքի պարզորոշությունն ու կազմակերպվածությունը, առանց որի անհնարին է կոմունիստական արտադրությունը:

«Կոմունիստական արտադրությունը,— նշված է ՍՄԿՊ Ծրագրում,— պահանջում է բարձր կազմակերպվածություն, ճշտություն և կարգապահություն, որոնք ապահովվում են ոչ թե հարկադրանքով, այլ հասարակական պարտքի



ըմբռնման հիման վրա, որոշվում են կոմունիստական հասարակարգի ամբողջ կացութաձևով: Աշխատանքը և կարգապահությունը ծանրություն չեն լինի մարդու համար, աշխատանքային գործունեությունը կդադարի լոկ ապրուստի միջոց լինելուց և կդառնա իսկական ստեղծագործություն, հաճույքի աղբյուր» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 485—486):

Կոմունիստական արտադրությունն իրենից կներկայացնի միասնական և փոխադարձորեն կապված, պարզորոշ կարգավորված ու պլանաչափ գործող արտադրական բջիջների ցանց: Աշխատանքը կենսական առաջին պահանջ դառնալու շնորհիվ բոլոր պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունները և հիմնարկները կդառնան կոմունիստական հասարակարգի աշխատավորների ինքնավար ասոցիացիաներ: Կվերանա մարդկանց կառավարելու անհրաժեշտությունը, այսինքն՝ առաջին հերթին, աշխատանքի ու սպառման չափի՝ պետության կողմից իրականացվող վերահսկողության անհրաժեշտությունը: Մարդկանց կառավարման տեղը, ինչպես կանխատեսել է Ֆ. Էնգելսը, կգրավի իրերի՝ այսինքն, արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կառավարումը: Եվ այն ժամանակ կստեղծվեն բոլոր ներքին պայմանները պետության մահացման համար: Հասարակությունը կստանա կառավարման բարձրագույն ձևը՝ կոմունիստական ինքնավարություն: Սակայն ինքնավարությունն ավելի կզարգացնի դեմոկրատական ցենտրալիզմի, միասնական պլանավորման, հասարակության ամբողջատնտեսական օրգանիզմի ներդաշնակ միասնության սկզբունքը: Ինքնավարությունն իրենից կներկայացնի քաղաքական էությունը կորցրած այնպիսի հասարակական մարմինների ներդաշնակ սիստեմ, ինչպիսիք են՝ Սովետները, պարտիան, կոմերիտմիությունը, արհեստակցական միությունները և այլն: Կարգի պաշտպանության, անձի ազատության ապահովման, հասարակության շահերի պաշտպանության արդի մարմիններից շատերը կդադարեն գոյություն ունենալուց: Օրինակ, ինչպես Ն. Ս. Խրուշչովն է ասել, մենք մեզ հետ կոմունիզմ չենք տանի միլիցիան: Մի կողմից հակահասարակական երևույթները գրեթե լիովին կվերանան կենսապայմանների փոփոխման, մարդկանց գիտակցության ու ինքնակարգապահության բարձրացման կապակցությամբ, իսկ մյուս կողմից՝ վարքի հանրաճանաչ նորմերի խախտումներն առանձին անհատների կողմից շատ դյուրին և արագ կկանխվեն կամ կխափանվեն ժողովրդական դրուժինիկների և այլ կազմակերպությունների կողմից:

Պետականությունը ինքնավարություն կդառնա ոչ թե միանգամից, այլ աստիճանաբար, երկար ժամանակվա ընթացքում: Այդ պրոցեսն սկսվել է արդեն: Սովետների դերի բարձրացում, նրանց աշխատանքին աշխատավորական լայն մասսաներին մասնակից դարձնել, հասարակական սկզբունքների զարգացում պետական ու պարտիական ապարատի աշխատանքում, հասարակական կազմակերպությունների դերի բարձրացում արտադրության և հասարակության կառավարման գործում, ժողովրդական դրուժինաների, ընկերական դատարանների կազմակերպում, կարևորագույն միջոցառումների համաժողովրդական քննարկում—սրանք են կոմունիստական ինքնավարության ձևավորման ուղիները:

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆ

Միայն կոմունիզմի օրոք լրիվ կիրականանա հավասարությունը՝ աղաղակող անհավասարության հազարամյակների միջից անցած մարդու լուսապայ-



digitised by A.R.A.R.@

ծառ երազանքը։ Ճիշտ է, արդեն իսկ սոցիալիզմն ստեղծում է իսկական հավասարության հիմքերը՝ վերացնում է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը և վերջ դնում մարդու շահագործմանը մարդու կողմից։ Արտադրության միջոցների նկատմամբ հարաբերությունների այդ հավասարությունը պայմանավորել է սոցիալիզմի օրոք քաղաքացիական հավասարությունը՝ դասակարգերի, ազգերի և ռասաների քաղաքական հավասարությունը, սեռերի հավասարությունը, հավասար աշխատանքի համար հավասար վարձատրությունը։ Բայց հավասարության գաղափարի իրականացումն իր մեջ ընդգրկում է կուլտուրայի, աշխատանքի պայմանների, կենցաղի հավասարությունը, և, վերջապես՝ բարձրագույն հավասարությունը՝ փաստացի տնտեսական հավասարությունը։ Այդ հավասարությունը հենց կոմունիզմն է, որն այն իրականացնում է ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքով։

Հասարակական արդարության այդ բարձրագույն ձևն իրականացվում է ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքն ամեն կերպ ու համակողմանիորեն զարգացնելու և սպառման առարկաների լիառատության հասնելու միջոցով։ Հենց ըստ աշխատանքի վարձատրության զարգացումն է, որ տանում է դեպի ըստ պահանջմունքների բաշխումը։ Եվ ահա թե ինչպես։

Առհասարակ ոչ որակյալ ծանր ֆիզիկական աշխատանքի վերացումը, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումն անհրաժեշտորեն կբարձրացնեն աշխատանքի որակը։ Դա բնականաբար կուղեկցվի աշխատանքի վարձատրության բարձրացմամբ։ Հետևապես, ըստ աշխատանքի բաշխումը հետզհետե կհավասարվի աշխատավորների տարբեր խավերի միջև, կկրճատվի բարձր և համեմատաբար ցածր եկամուտների միջև եղած տարբերությունը։ Ինչպես նշվում է ՍՄԿՊ Ծրագրում, «...չորակավորված բանվորների և ծառայողների ավելի ու ավելի մեծ մասսաներ կորակավորվեն, իսկ որակավորման և աշխատանքի արտադրողականության մակարդակի միջև եղած տարբերության նվազեցումը կուղեկցվի վարձատրության մակարդակի տարբերությունների հետևողական կրճատմամբ» (Նույն տեղում, էջ 513)։

Արտադրության և մարդկանց օբյեկտիվ զարգացման ընթացքում նվազագույնի կարող է հասնել զանազան մարդկանց որակավորման և աշխատանքի արտադրողականության միջև եղած տարբերությունը։ Հետևապես, կկրճատվի ու նվազագույնի կհասնի նաև նրանց աշխատանքի վարձատրության միջև եղած տարբերությունը։ Բայց, այնուամենայնիվ, վերջնականապես չեն կարող հաղթահարվել մարդկանց աշխատանքի արտադրողականության տարբերությունները, քանի որ կմնան անհատների ձիրքի, աշխատանքի նկատմամբ նրանց ընդունակությունների տարբերությունները։ Առհասարակ անհնար է դրանք հաղթահարել։ Ինչպես ասել է Վ. Ի. Լենինը՝ «անհեթեթություն է սպասել մարդկանց ուժերի և ընդունակությունների հավասարություն սոցիալիստական հասարակարգում» (Երկեր, հ. 20, էջ 172)։ Հետևապես այդ ճանապարհով չի կարելի հասնել բոլոր քաղաքացիների պահանջմունքների ավտոմատիկ հավասար բավարարման, քանի որ ուժերի և ընդունակությունների տարբերությունները կըտան աշխատանքի տարբեր արտադրողականություն և, հետևապես, կառաջացնեն տարբեր վարձատրության անհրաժեշտություն։ Մյուս կողմից, նույնիսկ հավասար վարձատրություն ստացողների միջև կլինեն ընտանեկան դրությունից բխող տարբերություններ՝ մեկն ամուրի է՝ մյուսն ամուսնացած և այլն։

Այստեղ են օգնության է հասնում մարդկանց տնտեսական դրության հա-



վասարեցման՝ միայն սոցիալիզմին հատուկ միջոցը։ Դա հասարակության անդամների միջև անվճար բաշխվող սպառման հանրային ֆոնդերն են։ Ուստի և ՍՄԿՊ Ծրագիրը նշում է, որ «կոմունիզմին մոտենալու համեմատ անձնական պահանջմունքներն ավելի ու ավելի մեծ չափով կբավարարվեն սպառման հանրային ֆոնդերի հաշվին, դրանց աճի տեմպերը կգերազանցեն ըստ աշխատանքի անհատական վարձատրության ավելացման տեմպերը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 514)։

Սպառման առարկաների ավելի ու ավելի լայնորեն ծավալվող լիառատության, ուրեմն նաև նրանց էժանացման հետ զուգորդվող աշխատանքի վարձատրության բարձրացումը և դրա տեմպերը գերազանցող ավելի ու ավելի մեծ նոմենկլատուրայով հանրային ֆոնդերի անվճար բաշխումը քսան տարվա ընթացքում հնարավորություն կստեղծեն ընդհուպ մոտենալու ըստ պահանջմունքների բաշխմանը։ Պարտիան նախատեսում է այդ ժամանակամիջոցում սպառման հանրային ֆոնդը հասցնել բնակչության ռեալ եկամուտների ամբողջ գումարի 50 տոկոսին։ Հաջորդաբար կանհետանան մարդկանց նյութական անհավասարության պատճառները։

Երեխաների ձրի խնամքը մանկական հիմնարկներում, աշխատունակների նյութական լրիվ ապահովումը, բոլոր քաղաքացիների ձրի բուժսպասարկումը, անվճար դեղորայքով և ձրի սանատորիական բուժումով նրանց ապահովելը, բընակչությանը նպաստներով, արտոնություններով և թոշակներով ավելի ու ավելի լայնորեն ապահովելը, կոմունալ տրանսպորտից, բնակարաններից, գազից, էլեկտրականությունից, ջրից և կենցաղային սպասարկման մի շարք այլ տեսակներից անվճար օգտվելը, վերջապես՝ ձեռնարկություններում և կոլտնտեսային արտադրության մեջ զբաղված մարդկանց համար ձրի ճաշեր հայթայթելը կնպաստեն մարդկանց տնտեսական դրության հավասարեցմանը։

Կենցաղի կազմակերպման ձևերի ու մեթոդների էական փոփոխումը կփոխի նաև կնոջ դրությունը։ Եթե հասարակական կյանքի ասպարեզում կինը վաղուց իրավահավասար է դարձել տղամարդուն, ապա ընտանեկան կյանքի շըրջանակներում նա դեռ զգալի չափով ենթակա է «խոհանոցային ստրկությանը»։ Երեխաների դաստիարակությունը, խանութից խանութ վազելը, ճաշ եփելը, բնակարան հավաքելը, լվացքը և շատ այլ գործեր հսկայական ժամանակ են խլում կանանց զգալի մասից։ Ուստի կոմունիստական հավասարությանն անցնելու խնդիրներից մեկն էլ՝ կնոջ լիակատար ազատագրումն է ընտանեկան հարաբերությունների ասպարեզում։ ՍՄԿՊ Ծրագիրը հատուկ ընդգծում է, որ պետք է վերացվեն կենցաղում կնոջ անհավասար դրության մնացորդները, ստեղծվեն սոցիալ-կենցաղային բոլոր պայմանները, որպեսզի մայրությունը հասարակական կյանքում և հասարակական գործունեության մեջ պետք է զուգորդվի գիտության ու արվեստի գործին կանանց ավելի ու ավելի ակտիվ, ստեղծագործական մասնակցության հետ։ Եվ այստեղ, իհարկե, ելքը նրանում չէ, որ կանանց մի մասի ազատագրումը կատարվի մյուս մասի՝ ծեր ծնողների, ազգականների կամ սոցիալիզմի պայմաններում պարազիտաբար թվացող և օրինաչափորեն ավելի ու ավելի «դեֆիցիտային» դարձող «աղախինների» «պրոֆեսիոնալ ստրկացման» հաշվին։ Ելքը «տնային սնոտիապաշտությամբ» շրջապատված անհատապաշտության խորտակումն է կենցաղում, արմատացած և շատերի «սրտին մոտ» նահապետական սովորությունների, ադաթների, հայացքների վերացումը։ Այստեղ ևս հիմք կհանդիսանա նյութատեխնիկական բազան, որը



digitised by A.R.A.R.@

կհեղաշրջի կենցաղի կազմակերպման, սպասարկումների իրականացման ասպարեզը։ Ամբողջ բնակչության սպասարկում հանրային սննդի, կենցաղային ձեռնարկությունների ցանցով, մեքենայացման և ավտոմատացման արմատավորում կենցաղում, տնտեսական շատ պրոցեսների (կերակուր պատրաստելուց մինչև լվացքը) տեխնոլոգիայի փոփոխում՝ սա է կենցաղում կնոջ լիակատար ազատագրման գործում պարտիայի կողմից իրականացվող կոմունիստական ուղին։

Այս ամենը, զուգակցվելով մարդկանց կոմունիստական գիտակցության բարձրացման և աշխատանքը կենսական առաջին պահանջ դառնալու հետ, ավելորդ կդարձնեն աշխատանքի չափի և սպառման չափի վերահսկողությունը։ Կիրականանա պատմության մեջ մեծագույն իրադարձությունը, որը մարդկության հետագա զարգացման ընթացքի վրա իր ազդեցությամբ, թերևս իրեն հավասարը չի ունենա։ Հասարակությունն իբրև նշանաբան կհռչակի՝ «Յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ պահանջմունքների» սկզբունքը։ Կիրականանա ճավաաարույթյան մարքս-լենինյան գաղափարը՝ սոցիալ-տնտեսական լիակատար ճավաաարությունը:

Այսպես, նյութատեխնիկական բազայի աստիճանական զարգացումը, դասակարգերի և սոցիալական խավերի վերացումը, աշխատանքը կենսական առաջին պահանջ դարձնելը, պետության վերածումը ինքնավարության, մարդկանց տնտեսական անհավասարության վերացումը և ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի կենսագործումը կհասցնեն հասարակության կազմակերպման բարձրագույն ձևին՝ կոմունիզմին։ Եվ արդեն մոտ է այդ հասարակությունը. սովետական մարդկանց ներկա սերունդը կապրի կոմունիզմի օրոք:

---

ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1960-1980 Թ.Թ.




# ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ՆՈՐԻՆ

**Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

ՀՍ.Մխ-ի նախագահ

XXII համագումարին տված ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվության մեջ Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Գլխավորը, որի վրա պետք է կենտրոնացվի ուշադրությունը, դա աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացումն է։ Աշխատանքի բարձր, իրոք կոմունիստական արտադրողականության համար մղվող պայքարում մենք պետք է հաստատուն կերպով հենվենք հզոր տեխնիկայի վրա»։

Արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման գործում մեր ռեսպուբլիկայում կատարված է որոշակի աշխատանք. 1961 թ. և 1962 թ. առաջին եռամսյակում ռեսպուբլիկայում յուրացված է մինչև 560 կվտ. կարողությամբ ավտոմատ կարգավորիչներով տրանսֆորմատորների, մինչև 400 հերց հաճախականության կերպափոխիչների, գործաղիր մեխանիզմների, 25 տոննանոց մամլիչների, վիսկոզային կորդով ավտոդողերի և արդյունաբերական ու լայն սպառման այլ ապրանքների արտադրությունը։ Նոր տեխնիկայի արմատավորումից 1961 թվականին ստացվել է 3,5 միլիոն ռուբլուց ավելի տնտեսական օգուտ։ Ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում անց են կացված արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման 110, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման 47 միջոցառումներ, շահագործման են հանձնվել կոմպլեքսային մեքենայացված և ավտոմատացված 40 արտադրական տեղամասեր, 18 հոսքային ու կոնվեյերային գծեր և այլն։ Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում արմատավորվեց 100 կվտ-ից բարձր կարողության գեներատորների հավաքման կոնվեյեր։

Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում իրականացված է պղնձա-մոլիբդենային հանքաքարերի բազմաստիճան հարստացումը։ Երևանի մսի կոմբինատում արմատավորված է մսի և կաթի արդյունաբերության կենտրոնական լաբորատորիայի կողմից մշակված երշիկեղեն պատրաստելու նոր տեխնոլոգիական պրոցես, որից ստացված տնտեսական օգուտը տարեկան կազմում է 100 հազար ռուբլի։ Երկրաբանության և ընդերքի պահպանության վարչությունը կոմպլեքսային մեքենայացման է ենթարկել հորիզոնական լեռնային փորվածքների հանքահատումը։

Տեխնիկական առաջընթացի գործում մեծ, ստեղծագործ աշխատանք են կատարում ճյուղային գիտա-հետազոտական ինստիտուտները։ Այսպես՝ Ժողտնտխորհի գիտահետազոտական լեռնահանքային ինստիտուտը մշակել է լեռ-



digitised by A.R.A.R.@

նային աշխատանքների կատարման պրոգրեսիվ տեխնոլոգիա, որի ներդրմամբ Ղափանի և Քաջարանի լեռնահանքային կոմբինատները տալիս են տարեկան 300 հազար ռուբլու տնտեսում։ Համամիութենական էլեկտրամեխանիկայի գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը միայն 1961 թ. նախագծել և արտադրությանն է հանձնել 20-ից ավելի նոր կոնստրուկցիայի տրանսֆորմատորներ, գեներատորներ, բարձր հաճախականության փոխարկիչներ և էլեկտրական այլ մեքենաներ, որոնք համապատասխանում են ժամանակակից տեխնիկայի մակարդակին։ Ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեցող գիտա-հետազոտական խնդիրներ են լուծել Քիմիայի, Կիրովականի «Արմխիմպրոեկտ» գիտա-հետազոտական ինստիտուտները։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու գործում իրենց լուման են մտցնում մեր ռեսպուբլիկայի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ 1961 թվականի ընթացքում 9341 ռացիոնալիզատորներ արել են 15528 առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել է 9550-ը։ Դրանց շնորհիվ տարեկան տնտեսվել է 8690 հազար ռուբլի, որը 7 տոկոսով ավելի է, քան 1960 թվականինը, իսկ 1962 թվականի առաջին եռամսյակում ներդրված 2542 առաջարկների շնորհիվ տնտեսվել է 1.735 հազար ռուբլի։

Առաջարկությունների արմատավորումը հնարավորություն է տվել զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բարելավելու աշխատանքի պայմանները, կատարելագործելու տեխնոլոգիական պրոցեսները։ Այդպիսի առաջարկներից է Հակոբ Մանուկյանի «սխտեմաանջատիչ» գյուտը, որը լայնորեն կիրառվում է ռեսպուբլիկայի տրիկոտաժի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում և տնտեսվում է 30 հազար ռուբլուց ավելի։ Նորիկ Ղուկասյանը առաջարկել է ձևավոր մանվածք ստանալու նոր եղանակ, որը ներդրված է Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի ու մահուդի կոմբինատում. դրա շնորհիվ լայնացավ թողարկվող արտադրանքի ասորտիմենտը, բարձրացավ արտադրանքի որակը։ Կիրովի անվան գործարանում անվանի գյուտարարներ Նորայր Կարապետյանը, Հակոբ Թարխանյանը և Արսեն Եղիազարյանը մշակեցին նոր տեխնոլոգիական պրոցես, որն ապահովում է քլորոպրենի ռեկտիֆիկացիայի սարքավորումների անխափան աշխատանքը։ Դրա շնորհիվ տարեկան տնտեսվում է 140 հազար ռուբլի։ Երևանի կոմպրեսորների գործարանի խառատ Ռազմիկ Սահակյանի՝ գազաբալոնների հատակի մշակման նոր եղանակը հնարավորություն ստեղծեց 2 անգամ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և տարեկան տնտեսելու 3000 ռուբլի։

Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի պղնձաձուլական բաժնի պետ Դավիթ Դավթյանին և կոմբինատի արտադրատեխնիկական բաժանմունքի նախկին պետ Միքայել Եպիսկոպոսյանին անհանգստացնում էր գազերի հետ դուրս եկող պղնձի փոշու կորուստը։ Երկար պրպտումներից հետո նորարարներին հաջողվեց ստեղծել հատիկավորող էլեկտրահարմարանք, որը որսում է կոնվերտերային վառարաններից դուրս եկող գազերը՝ կլանելով պղնձի փոշին։ Փորձնական հարմարանքը, որն աշխատում է Ալավերդու կոմբինատում, տարեկան կարող է գազերից անջատել 30 տոննա պղինձ։

Գյուտարարներ Գեորգի Ավետիքովին և Էդիկ Ներսիսյանին այս տարի հաջողվեց ստեղծել խողերի էլեկտրախլացման անընդհատ գործող ավտոմատ հարմարանք, որը հնարավորություն ընձեռեց ավարտելու Երևանի մսի կոմբինատի անասունների մշակման հոսքային գծի կոմպլեքսային մեքենայացումը և



տարեկան տնտեսելու 150 հազար ռուբլի։ Այսպիսի օրինակներ շատ կարելի է բերել։

Ռեսպուբլիկայի գյուտարարները և ռացիոնալիզատորները մեր ժամանակների մեծ շարժման՝ կոմունիստական աշխատանքի համար պայքարող բրիգադների և հարվածայինների շարժման, առաջամարտիկներն են։ Նրանք հանդես են գալիս բազմաթիվ նոր նախաձեռնություններով. ստեղծվել են հասարակական կոնստրուկտորական, տեխնոլոգիական, տնտեսական վերլուծման բյուրոներ։

Ինժեներա-տեխնիկական աշխատողների, գյուտարարների և ռացիոնալիզատորների համախմբումն այդ բյուրոներում, գիտության ու արտադրության բեղմնավոր համագործակցությունը արդեն տվել են դրական արդյունք։ Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում են 37 կոնստրուկտորական և 9 տնտեսական վերլուծման բյուրոներ։ Լավ են աշխատում Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրատեխնիկական, կոմպրեսորների գործարանների, Լենինականի քաղաքային միացյալ հասարակական կոնստրուկտորական բյուրոները և այլն։ Այդ բյուրոների միջոցով 1961 թ. մշակված են 185 առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 92-ը՝ տարեկան 108 հազար ռուբլի պայմանական-տնտեսական օգուտով։

Ռեսպուբլիկայի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները պարտավորվել են 6 տարվա ընթացքում յոթնամյակի անվան ռացիոնալիզատորական ֆոնդը մուծել 60 միլիոն ռուբլի։ Յոթնամյակի անցած երեք տարիներում ռեսպուբլիկայում ներդրված առաջարկներից ստացված տնտեսական օգուտը կազմում է 24 միլիոն ռուբլի։ Մնացած 3 տարիների ընթացքում մենք պետք է տանք 36 միլիոն ռուբլի։ Պայքարելով յոթնամյակի անվան ռացիոնալիզատորական ֆոնդ ստեղծելու համար, նորարարներն աշխատում են լուծել նորանոր տեխնիկական խնդիրներ։

Այդ կարևոր գործում մեծ նշանակություն ունեն կոնկուրսներն ու ստուգատեսները, որոնք տեխնիկական միտքը կենտրոնացնում են առանձին կոնկրետ հարցերի վրա, առաջացնում լավագույն առաջարկների հոսք և բարելավում արտադրության մեջ դրանց ներդրման գործի հսկողությունը։ Միայն 1961 թվականի առաջարկների մեկ երրորդը ստացվել է կոնկուրսների և ստուգատեսների անցկացման ժամանակաշրջանում։

Ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման ուղղությամբ ռացիոնալիզատորների և արտադրության նորարարների ստեղծագործ աշխատանքի կազմակերպման գործում մեծ անելիքներ ունեն գյուտարարների ու ռացիոնալիզատորների և գիտա-տեխնիկական ընկերությունների սկզբնական կազմակերպությունները։ Այնտեղ, ուր խորհուրդներն աշխատում են ձեռնարկության ղեկավարների հետ համագործակցած, իրականացնում են համատեղ միջոցառումներ, տարեցտարի ավելի գոհացուցիչ արդյունքների են հասնում։ Օրինակ՝ Երևանի Կաբելի գործարանի գյուտարարների ու ռացիոնալիզատորների խորհուրդը (նախագահ ընկ. Գ. Սմբատյան) աշխատում է ԲՐԻԶ-ի հետ սերտ համագործակցած, պաշտպանում է գյուտարարների ու ռացիոնալիզատորների իրավունքները, հետևում ընդունված առաջարկների մշակման և ներդրման գրաֆիկի կատարմանը, պատասխանատվության կանչելով ժամկետները խախտողներին։ Գործարանում նշանակված են կոնսուլտացիայի օրեր, որտեղ լավագույն ինժեներները տեխնիկական օգնություն են ցույց տալիս ռացիոնալիզատորնե-



digitised by A.R.A.R.@

րին, կազմակերպում լեկցիաներ, երեկոներ՝ տեխնիկական թեմաների շուրջ։
Խորհուրդը 1961 թ. գործարանում կազմակերպեց հասարակական կոնստրուկ-
տորական բյուրո (նախագահ Ջիբուխչյան) և նրան կից ներդրման բրիգադա
(բրիգադավար Թադևոսյան), որոնք մշակեցին և ներդրեցին 25 առաջարկու-
թյուն, 28 հազար ռուբլի տնտեսական օգուտով։

Ստեղծագործաբար է աշխատում Ղափանի պղնձա-հանքային կոմբինատի
խորհուրդը։ Նրա նախագահ Գուրգեն Պետրոսյանը մեծ հեղինակություն է վա-
յելում կոմբինատում, հանքագործները լավ են ճանաչում նրան ու միշտ իրենց
առաջարկությունների մշակման և ներդրման գործում դժվարությունների հան-
դիպելիս, դիմում են նրան։ Ընկեր Պետրոսյանը չի սպասում, որ դիմեն իրեն,
ինքն է հասնում օգնության։ Խորհուրդը տեխնիկական օգնություն է ցույց տա-
լիս գործարանի առաջավորներին, կազմակերպելով կոնսուլտացիաներ, որոնց
ժամանակ մասնագետներն օգնում են ռացիոնալիզատորներին՝ տեխնիկական
հարցերը լուծելու։

Ուսանելի է Լենինականի տեքստիլ կոմբինատի խորհրդի ԲՐԻԶ-ի աշխա-
տանքը։ Այստեղ ամեն շաբաթ հրավիրում են նիստեր, որտեղ քննարկվում են
ո՛չ միայն ֆաբրիկաներից եկող արժեքավոր առաջարկները, այլև հայրենական
և արտասահմանյան արժեքավոր նորություններ։ Տեքստիլագործների մոտ նո-
րի, առաջավորի ներդրմամբ զբաղվում են բոլորը՝ և՛ բանվորները, և՛ ինժենե-
րա-տեխնիկական անձնակազմը։

Վատ չեն աշխատում նաև ալյումինի գործարանի, Կիրովականի քիմիական
կոմբինատի, Լենինականի գուլպայի ֆաբրիկայի, Շահումյանի անվան տրիկո-
տաժ ֆաբրիկայի, մետաքսի կոմբինատի, Քաջարանի պղնձա-մոլիբդենային
կոմբինատի և մի շարք այլ ձեռնարկությունների խորհուրդները։

Արհմիութենական և տնտեսական կազմակերպությունների խնդիրն է՝
բազմակողմանի օգնել ինչպես սկզբնական կազմակերպություններին, այնպես
էլ միացյալ խորհուրդներին, ամրապնդել նրանց ձեռք բերած հաջողություննե-
րը և, օգտագործելով նրանց դրական փորձը, կազմակերպել նաև մյուս խոր-
հուրդների աշխատանքը։

Չնայած կատարված դրական աշխատանքին և ձեռք բերված խոշոր հաջո-
ղություններին, արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման, ինչպես նաև
ռացիոնալիզացիայի և գյուտարարության աշխատանքներում կան էական թե-
րություններ։ Բարվոք վիճակում չէ ընդունված գյուտերի և ռացիոնալիզատո-
րական առաջարկությունների ներդրման գործը. հաճախ առանձին ղեկավարներ
ձևական, բյուրոկրատական վերաբերմունք են ցույց տալիս գյուտարարների և
ռացիոնալիզատորների նկատմամբ, անթույլատրելի կերպով ձգձգում են առա-
ջարկների քննարկումը, ներդրումը, հեղինակներին վճարելը։ Դա է գլխավոր
պատճառը, որ մեր արդյունաբերության առանձին ճյուղերում ու ձեռնարկու-
թյուններում այս տարի, անցյալ տարվա հետ համեմատած, իջել են ռացիոնա-
լիզատորական աշխատանքի ցուցանիշները։

Նույնիսկ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝
ժողովրդական տնտեսությունում ընդունված առաջարկների ներդրման գործի
բարելավման մասին 1960 թ. մայիսի 20-ի որոշումից հետո էլ արդյունաբերու-
թյան ճյուղերի և նրանց ձեռնարկությունների որոշ ղեկավարներ միջոցներ չեն
ձեռնարկել այդ գործը բարելավելու համար։ Այդ է պատճառը, որ մեր ռեսպուբ-
լիկայում 1961 թ. համարյա բոլոր ցուցանիշները ցածր են միջին միութենա-



կան տվյալներից. ներդրումը մեզ մոտ կազմում է 78,7 տոկոս, մինչդեռ միջին
միութենականը 82 տոկոս է. մեզ մոտ հաշվարկվում է ներդրված առա-
ջարկների 45, իսկ միջին միութենականը՝ 51 տոկոսը։ 1962 թ. առաջին եռ-
ամսյակում, 1961 թ. այդ նույն ժամանակի հետ համեմատած, տնտեսական
օգուտը 9 տոկոսով իջել է։

Ժողտնտխորհը, որը միավորում է մեր արդյունաբերական ձեռնարկու-
թյունների 80 տոկոսից ավելին, ընթացիկ տարում թուլացրել է այս բնագավա-
ռի աշխատանքը։ Դրա պատճառով էլ ներդրումը 1960 թ. 77,7 տոկոսից,
1961 թ. իջել է, իսկ 1962 թ. առաջին եռամսյակում կազմում է ընդամենը 49 տո-
կոս։ Առաջարկների ներդրումից ստացվող տնտեսումը, անցյալ տարվա նույն
ժամանակի հետ համեմատած, նվազել է 10 տոկոսով։

Անբավարար է վիճակը արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղերում,
ինչպիսիք են՝ քիմիան, մեքենաշինությունը և հաստոցաշինությունը, մսի ու
կաթի արտադրությունը, շինարարությունը և այլն։ Օրինակ՝ քիմիական ար-
դյունաբերության ձեռնարկություններում տարեցտարի իջնում են ռացիոնալի-
զատորական աշխատանքի ցուցանիշները։ Այսպես, 1960 թ. հետ համեմատած,
1961 թ. ռացիոնալիզատորների թիվը քիմիական արդյունաբերության վարչու-
թյան սիստեմում իջել է 2,5, ընդունված առաջարկների թիվը՝ 15 տոկոսով,
ընդունված առաջարկներից ներդրվել է միայն 71 տոկոսը։ Մսի և կաթի ար-
դյունաբերության սիստեմում ռացիոնալիզատորների թիվը իջել է 27, ստաց-
վող առաջարկների թիվը՝ 50 տոկոսով, ընդունված առաջարկներից ներդրվել է
67 տոկոսը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության սիստեմում 1961 թ. ընդուն-
ված 1937 առաջարկներից ներդրվել է 1500-ը, կամ 78 տոկոսը։ Մեքենաշինու-
թյան և հաստոցաշինության արդյունաբերության սիստեմում ներդրվել է ըն-
դունված առաջարկների 68 տոկոսը։

Ավելի վատ են գործերը Մինիստրների Սովետին կից տեղական արդյու-
նաբերության և կենցաղ-սպասարկման վարչության ձեռնարկություններում,
որտեղ, ըստ պաշտոնական տվյալների, 1962 թ. առաջին եռամսյակում առա-
ջարկություն են ներկայացրել միայն 11 հոգի, մինչդեռ ամբողջ սիստեմում 21
հազար հոգուց ավելի աշխատողներ կան։ Այստեղ չի կազմակերպված ռացիո-
նալիզատորական աշխատանքի հաշվարկը, ամիսներով ձգձգվում են առան-
ձին առաջարկների քննարկումը, ներդրումը։

Ցավոք սրտի, դեռ կան առանձին տնտեսվարներ, որոնք խոսքով ողջու-
նելով բանվորների և մասնագետների ստեղծագործական մասնակցությունը
տեխնիկական առաջընթացին, իսկ գործնականում անտարբեր, երբեմն, նույն-
իսկ, պահպանողական վերաբերմունք են ցույց տալիս գյուտարարների և ռա-
ցիոնալիզատորների նախաձեռնությանը։ Ինչպե՞ս կարելի է հաշտվել այն
փաստի հետ, երբ ամեն տարի մեր ռեսպուբլիկայում ընդունված առաջարկու-
թյունների մոտ մեկ երրորդը չի ներդրվում արտադրության մեջ, և պետությու-
նը զրկվում է դրանց կիրառումից ստանալիք օգուտից։ Միայն 1961 թվականին
ընդունված առաջարկություններից մոտ 2600-ը ներդրված չեն։ Վերջերս եր-
կաթուղային տրանսպորտի աշխատողների համամիութենական խորհրդակցու-
թյունում իր արտասանած ճառում ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Հարկավոր է
բարելավել վերահսկողությունն այն բանի նկատմամբ, թե ինչպես են կատար-
վում պարտիայի և կառավարության որոշումները, ինչպես են արտադրության



digitised by A.R.A.R.@

մեջ արմատավորվում գիտության, տեխնիկայի նվաճումները և առաջավորների փորձը։ Կոմունիզմի կառուցումը արտադրության մեքենայացում և ավտոմատացում է։ Իսկ ինչպե՞ս են արտադրության մեջ արմատավորվում գիտության և տեխնիկայի նվաճումները։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ ժողտնտխորհներում և շատ ձեռնարկություններում կարելի է գտնել բազմաթիվ հետաքրքրական կարևոր առաջարկություններ ու գյուտեր, որոնք վաղուց ստուգված են, բայց արտադրության մեջ չեն արմատավորվում»։

Բրդյա նուրբ գործվածքեղենի և մահուդի կոմբինատի երիտասարդ գյուտարար Կիմ Հովհաննիսյանը բազմաթիվ խելացի, գործին օգնող գյուտեր ու ռացիոնալիզատորական առաջարկություններ ունի։ Սակայն կոմբինատի ղեկավարությունը (գլխավոր ինժեներ Նալբանդյան) շատ քիչ է մտահոգվում ինչպես նրա, այնպես էլ շատ ուրիշների առաջարկների ներդրման գործով։ Այսպես, մինչև օրս ներդրված չէ Հովհաննիսյանի 1960 թվականին արած գյուտը՝ տափակավոր ոլորվածքի թելից տրիկոտաժ և կտորներ արտադրելը, իսկ 1960 թ. հուլիսի նրա առաջարկությունը՝ անմշակ տրիկոտաժային մանվածքի մշակումը ընդունված է փորձարկման, բայց անցել է երկու տարի և առաջարկի փորձարկման մասին ոչ-ոք չի մտածում։ Այդ վիճակում են նաև ռացիոնալիզատորներ Նորիկ Ղուկասյանի, Պարույր Մանուկյանի և շատ ուրիշների գյուտերն ու ռացիոնալիզատորական առաջարկները, որոնց ներդրմամբ կոմբինատը կտնտեսեր հարյուր հազարավոր ռուբլիներ։ Պատահական չէ, որ կոմբինատում տարեցտարի նոսրանում են ռացիոնալիզատորների շարքերը, պակասում է ընդունված և ներդրված առաջարկությունների թիվը։ Այսպես, 1960 թ. կոմբինատում կար 167 ռացիոնալիզատոր, իսկ 1961 թ.՝ 115։ Ընդունված առաջարկների թիվն իջել է 40-ով։ Բավարար չեն նաև 1962 թ. առաջին եռամսյակի ցուցանիշները։

Քիչ չեն նաև հեղինակային վարձատրության ձգձգման դեպքերը։ Առաջարկությունը ներդնելուց հետո մոռանում են ռացիոնալիզատորի մասին, չեն վճարում նրան հասանելիքը։ Երբեմն էլ որոշ տնտեսվարներ աշխատում են փոքրացնել ներդրված առաջարկներից ստացվող տնտեսական չափը, կամ բոլորովին չհաշվարկել, ենթադրելով, թե պետությանը մեծ օգուտ են տալիս։ Այդպիսի վերաբերմունքը ճիշտ չէ, քանի որ նման «տնտեսմամբ» այդ ղեկավարները ստեղծագործական աշխատանքից հեռացնում են բազմաթիվ ընդունակ ինժեներների ու բանվորների, իսկ դա պետությանը նյութական ավելի մեծ վնաս է տալիս, քան նորարարին հասնող խրախուսանքի վճարման ենթադրյալ «տնտեսումը»։ Այդպիսի փաստերը բազմաթիվ են։

Երևանի սարքաշինական գործարանի ռացիոնալիզատոր Ալբերտ Սարգըսյանի առաջարկով 1960 թ. մայիսին ներդրվեց «սարքերի վրա ցուցատախտակների սատիճանավորումը», որը միանգամից կրճատում է ձեռքով կատարվող չորս գործողությունը և բարձրացնում արտադրողականությունը։ Երկու տարի է անցել այդ առաջարկության ներդրումից, սակայն Սարգսյանին դեռևս ոչինչ չեն վճարել։ Այդպես է գործարանի գլխավոր ինժեներ Շահինյանի կամքը։

Ջեթ-օճառ կոմբինատի գլխավոր ինժեներ ընկ. Բաղդասարյանը աշխատում է ամեն կերպ «խնայել» պետական միջոցները՝ ռացիոնալիզատորներին օրենքով հասնող վարձատրության հաշվին։ Եվ երբ վարձատրությունը 10



ռուբլուց անցնում է, նա պահանջում է նորից հաշվարկ կատարել և այնպես անել, որ գումարը մեծ չլինի։

Ձգձգումներ, պահպանողականություն ամեն տեղ են նկատվում, նույնիսկ նոր տեխնիկայի ներդրման գործում, որը մեծ վնաս է հասցնում պետությանը։ 1961 թ. ռեսպուբլիկայի նոր տեխնիկայի ներդրման պլանը կատարված է ընդամենը 68,5, 1962 թ. առաջին եռամսյակին՝ 72 տոկոսով. այդ գործն ամենից վատ է քիմիայի, մեքենաշինության, հաստոցաշինության, սննդի արդյունաբերության, փայտամշակման և անտառային արդյունաբերության, ինչպես նաև գյուղատնտեսության մեջ։

Ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի գծով չեն կատարվել խիստ կարևոր միջոցառումներ, որոնց արմատավորումը կտար թե՛ զգալի տնտեսական օգուտ և թե մեծ դեր կխաղար այդ ճյուղերի զարգացման գործում։ Այդ միջոցառումներից են՝ միկրոէլեկտրաշարժիչների հավաքման կոնվեյերիզացիան Լենինականի գործարանում, կոշտ կաշվե ապրանքների խոնավացման մեքենայացումը՝ Երևանի կաշվի գործարանում, առանց նախապես թելի վրա շարելու ծխախոտ չորացնող ագրեգատի փորձնական նմուշի պատրաստումը և այլն։

1962 թ. հունվարի 13-ի «Պրավդայի» առաջնորդողում մեր ռեսպուբլիկան քննադատված էր այն բանի համար, որ Պետպլանի կողմից գյուտերը չեն պլանավորվում։ Քննադատությունը տեղին էր։ Անհրաժեշտ է նշել, որ պարտիական ու արհմիութենական կազմակերպությունները խիստ հսկողություն չեն սահմանում և ժամանակին չեն հայտաբերում ու դատապարտում ձեռնարկությունների այն ղեկավարներին, որոնք անտարբեր, ձևական ու բյուրոկրատական մոտեցում են ցուցաբերում ռացիոնալիզացիայի նկատմամբ։

«Պետք է մշտապես կոմունիստական վերահսկողության լուսարձակով լուսավորել արտադրության բոլոր տեղամասերը, որպեսզի նա, ումից կախված է նոր տեխնիկայի և աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորումը, զգա, որ գտնվում է հասարակայնության վերահսկողության ներքո։ Իսկ եթե այդպիսի աշխատողը խելքի չգա, ապա պետք է նրա նկատմամբ կիրառել ներգործության անհրաժեշտ միջոցներ և եթե դա էլ չօգնի, ապա պետք է վճռականորեն փոխել անփույթ աշխատողներին»,— երկաթուղային աշխատողների համամիութենական խորհրդակցությունում ասաց Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։ Նույն վճռականությամբ այդ հարցը դրեց նաև ՍՄԿԿ XXII համագումարը, շեշտելով, որ հարկավոր է պարտիական ու դատական խիստ պատասխանատվության ենթարկել այն անփույթ տնտեսվարներին, որոնց մեղքով տարիներ շարունակ մոռացության են տրվում ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկները, այն մարդկանց, ովքեր խանգարում և արգելակում են արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորումը։ Լճացումը, անշարժությունը խորթ են սոցիալիստական արտադրության էությանը, որը դինամիկ է, ռևոլյուցիոն, միշտ առաջընթաց։

Լուրջ և պատասխանատու խնդիրներ են դրված գյուտարարների, ռացիոնալիզատորների և գիտատեխնիկական ընկերությունների առաջ։ Նրանք պետք է լինեն տեխնիկայի ներդրման առաջամարտիկներ։ Ճիշտ է, վերջին ժամանակներս այդ ընկերություններն ուժեղացրել են իրենց ազդեցությունը այդ գործի նկատմամբ, սկսել են ավելի շատ միջոցառումներ ձեռնարկել և տարբեր հարցերի շուրջ առաջարկներ ներկայացնել տնտեսական, պարտիական և



digitised by A.R.A.R.@

արհմիութենական կազմակերպություններին, սակայն նրանց կազմակերպչա-
կան աշխատանքներում դեռևս կան թերություններ. ամենից առաջ թույլ է
պայքարը բյուրոկրատիզմի, քաշքշուկների և պահպանողականության դեմ,
դեռևս շատ են նամակներն ու բողոքները առաջարկների, նրանց ներդրման և
հեղինակային վարձատրության ձգձգման մասին։ Դրա պատճառն այն է, որ
մեր սկզբնական պարտիական կազմակերպություններում թույլ է կազմա-
կերպչական աշխատանքը, քիչ ակտիվ է համախմբված խորհուրդների շուրջը,
որի հետևանքով և ձգձգվում է հարցերի լուծումը։

Մեր սկզբնական կազմակերպությունները պետք է դառնան ավելի մար-
տունակ, լավագույն կազմակերպիչներ, ռացիոնալիզատորների համար կազմա-
կերպեն մշտական տեխնիկական օգնություն։ Խորհուրդները պետք է լինեն
ռացիոնալիզատորների առաջին օգնականն ու պաշտպանը։ Պարտիական և
արհմիութենական կազմակերպությունները պետք է ամենօրյա ղեկավարու-
թյուն և բազմակողմանի օգնություն ցույց տան այդ խորհուրդներին։ Գյուտա-
րարների և ռացիոնալիզատորների մասսայական շարժման զարգացմանը
պետք է ուղեկցի գործող փորձնական բազաների ընդլայնումն ու նորերի կազ-
մակերպումը, այդ ամենը հնարավորություն կընձեռեն արագ պատրաստելու
նորարարների առաջարկների փորձնական նմուշները և դրանք ներդնելու ար-
տադրության մեջ։

Գյուտարարական և ռացիոնալիզատորական գործին խանգարում է նաև
նյութա-տեխնիկական բազայով լրիվ ապահովված չլինելը. երբեմն այս կամ
այն մասը, մետաղը կամ նյութը չլինելու պատճառով երկար ժամանակ ձգձգ-
վում է առաջարկների ներդրումը։ Ժողտնտխորհի, մինիստրությունների ու գե-
րատեսչությունների ղեկավարները պետք է պայմաններ ստեղծեն առաջարկու-
թյունների հիմնավորումն ու ներդրումը նյութա-տեխնիկական բազայով ապա-
հովելու համար։ Ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների ղեկավարնե-
րը պետք է ձեռք առնեն բոլոր միջոցները գյուտարարներին և ռացիոնալիզա-
տորներին բավարար օգնություն ցույց տալու համար։

Արտադրության նորարարների առջև խոշորագույն խնդիրներ են դրված։
ՍՄԿՊ Ծրագրում նշված է, որ տեխնիկայի առաջընթացի գործում առաջատար
դեր ունեն էլեկտրիֆիկացիան և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։
Էլեկտրիֆիկացիան այն հիմքն է, որի վրա զարգանում են ավտոմատիկան, ռա-
դիոտեխնիկան, էլեկտրոնիկան, կիբեռնետիկան և այլն, որոնք որոշում են ժա-
մանակակից արտադրության տեխնիկական մակարդակը։ Կոմունիզմի նյու-
թա-տեխնիկական բազայի ստեղծումն անհնար է առանց գունավոր և սև մետա-
լուրգիայի արդյունաբերության արագ զարգացման։ Դրա համար պետք է ներ-
դրվեն հանքերի հանույթի և հարստացման ավելի կատարելագործված տեխնո-
լոգիական պրոցեսներ, գունավոր մետաղների կոնցենտրատների մշակման
էֆեկտիվ սխեմաներ և հումքի ավելի լրիվ ու կոմպլեքս օգտագործման մեթոդ-
ներ։

Կարևոր հարցեր են դրված նաև մեծ քիմիայի արդյունաբերական ձեռնար-
կություններում աշխատող նորարարների առաջ։ Քիմիկոսներն իրենց ողջ ստեղ-
ծագործական աշխատանքով պետք է ձգտեն լուծել տեխնիկական կարևոր խըն-
դիրները, յուրացնել նոր, բարձր արդյունավետությամբ արտադրանք։ Նորա-
րարների պրպտող միտքը պետք է աշխատի նոր տեսակի սինթետիկ կաուչուկ,
ացետիլենիկ քացախաթթվի անհիդրիդ, նոր տեսակի ացետատային մետաքսա-



ներ, նոր, բարձրորակ քիմիական նյութեր և հանքային պարարտանյութեր ստա-
նալու միջոցներ գտնել։

Գյուտարարների ու ռացիոնալիզատորների, ինժեներա-տեխնիկական աշ-
խատողների խնդիրն է՝ կոմպլեքսային մեքենայացման ենթարկել արդյունաբե-
րության բոլոր բնագավառները, որը կվերացնի ձեռքով կատարվող բեռնման-
բեռնաթափման աշխատանքները և կբացառի ծանր աշխատանքը հիմնական և
օժանդակ արտադրական գործողությունների ժամանակ։

Կոմունիզմի կառուցման ծրագրի կարևոր բաղկացուցիչ մասն է նաև բազ-
մակողմանի զարգացած, բարձր ապրանքայնություն ունեցող, աշխարհակչռու-
թյանն առատ մթերքներով, իսկ արդյունաբերությանը հումքով ապահովող գյու-
ղատնտեսության ստեղծումը։ Գյուղատնտեսության զարգացման կարևորագույն
խնդիրները լուծելու համար անհրաժեշտ է արմատապես փոխել վերաբերմուն-
քը նոր տեխնիկայի ներդրման և ռացիոնալիզացիայի նկատմամբ։ Առայժմ
գյուտարարությունը և ռացիոնալիզացիան գյուղատնտեսական ձեռնարկու-
թյուններում զարգանում են անկազմակերպ։ 1961 թ. ընթացքում ամբողջ գյու-
ղատնտեսության մեջ ստացված են միայն 101 առաջարկություն, որոնցից ըն-
դունված են 100-ը, ներդրված՝ 89-ը։

Ժամանակն է, որ գյուղատնտեսական կազմակերպությունների ղեկավար-
ները զբաղվեն աշխատանքի այդ կարևոր բնագավառով։ Գյուտարարների ու
ռացիոնալիզատորների գիտատեխնիկական ընկերությունները պետք է մոբիլի-
զացնեն գյուղատնտեսության աշխատողների ստեղծագործական նախաձեռնու-
թյունը՝ գյուղատնտեսական արտադրության կոմպլեքս մեքենայացման և էլեկ-
տրիֆիկացման, անասնապահական ֆերմաների էլեկտրամեքենայացման, ավ-
տոմատացման և արտադրական միջոցների ռացիոնալ օգտագործման միջոցով
աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ։

«Հնամոլությունը, լճացումը խորթ են դինամիկ, ռևոլյուցիոն, միշտ առա-
ջադիմող սոցիալիստական արտադրության բուն էությանը,— ասված է պար-
տիայի XXII համագումարին ՍՄԿՊ Կենտկոմի տված հաշվետվության մեջ։—
Անհրաժեշտ է, որ մենք ավելի արագ և մինչև վերջ օգտագործենք այն ամենը,
ինչ մեր երկրում ստեղծում են գիտությունն ու տեխնիկան, ավելի համարձա-
կորեն վերցնենք ամբողջ այն լավը, ինչ տալիս է արտասահմանյան փորձը, ա-
վելի լայնորեն զարգացնենք մասնագիտացումն ու կոոպերացումը, արագաց-
նենք արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման
տեմպերը։

Կառուցելով կոմունիստական էկոնոմիկան, մենք չենք կարող հանդուրժել
կոնսերվատիզմը տեխնիկայի ասպարեզում»։

Ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների, մինիստրությունների,
արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների ղեկավարները պետք
է ձեռնարկեն արդյունավետ միջոցներ՝ «կանաչ ճանապարհ» հարթելու լայն
մասսաների հետագա ստեղծագործական նախաձեռնության համար։ Գյուտա-
րարների և ռացիոնալիզատորների նկատմամբ հոգատարություն և տեխնիկա-
կան օգնության կազմակերպում. այս պետք է լինի պարտիական, տնտեսական,
արհմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

digitised by A.R.A.R.@

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ

**Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**

ՀԿՊ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար

*Երևանի աշխատավորների առջև ծառացած են լուրջ ու պատասխանատու խնդիրներ, որոնց կենսագործումը պահանջում է ուժերի առավել լարում, ստեղծագործական քրտնաջան աշխատանք։ Այդ խնդիրների լուծման գործում մեծ է եղբայրական երեք ռեսպուբլիկաների մայրաքաղաքների՝ Կիևի, Թբիլիսիի և Բաքվի աշխատավորների հետ ծավալված տրադիցիոն սոցիալիստական մրցության դերը։ Դրանում վառ կերպով դրսևորվում է սովետական ժողովուրդների լենինյան բարեկամության մեծ ուժը. մրցողները համագործակցում և փոխադարձաբար օգնում են միմյանց արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, արտադրանքի նոր տեսակների յուրացման, առաջավոր փորձի փոխանակման, ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկությունների ներդրման և բազմաթիվ այլ հարցերում։*

*Այդ մրցությունը մեծ չափով օգնում է մեր մայրաքաղաքի աշխատավորներին՝ ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Քաղաքի արդյունաբերության համախառն արտադրանքի 1961 թվականի պլանը կատարվեց դեկտեմբերի 25-ին և տրվեց մոտ 12 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Մայրաքաղաքի արտադրական հիսուն խոշոր ձեռնարկություններ, որոնց թվում Ս. Մ. Կիրովի անվան, ալյումինի, հիդրոպոմպերի, ռետինատեխնիկական, ավտովերանորոգման և մի շարք այլ գործարաններ, պատվով կատարեցին ստանձնած պարտավորությունները։ Այդ կոլեկտիվները, նրանց պարտիական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները գործով ցույց տվին, որ կարող են ո՛չ միայն բարձր պարտավորություններ ստանձնել, այլև համառ ու հետևողական աշխատանքով կատարել դրանք, հմտորեն գլխավորել աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու եռանդը։*

*Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների, նախագծային կազմակերպությունների և գիտահետազոտական ինստիտուտների կոլեկտիվները խոշոր գործ են կատարում արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, հոսքային գծերի ու կոնվեյերների ներդրման, հնացած սարքավորումների մոդեռնացման ուղղությամբ։ Այդ ամենում զգացվում է մեր պարտիական կազմակերպությունների աճող ակտիվ ներգործությունը, դրսևորվում նրանց ձեռներեցությունը։*

*Պարտիական շատ կազմակերպությունների լրջորեն անհանգստացնում են*



*արտադրության տեխնիկական առաջադիմության հարցերը. դրանք պարբերաբար քննարկվում են պարտբյուրոներում, պարտիական և արհմիութենական ժողովներում, հասարակական կարծիք է ստեղծվում տեխնիկա-տնտեսական միջոցառումների նշանակության շուրջ և գործնական քայլեր արվում դրանց ժամանակին ու անթերի կատարման համար։ Անցյալ տարի գերակատարվել են նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման գծով վերցրած սոցիալիստական պարտավորությունները։ Իրացվել են արտադրանքի ավելի քան հարյուր կարևորագույն տեսակներ, այդ թվում՝ ալյումինի փոլգա, էլեկտրաշարժիչներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, էլեկտրաչափիչ գործիքներ, երկաթ-բետոնե իրեր, փաթաթման լարեր և արտադրանքի շատ այլ տեսակներ։*

*Անհամեմատ բարելավվել է ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների վիճակը արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտային և շինարարական կազմակերպություններում։ Սոցիալիստական մրցությամբ նրանք պարտավորվել էին անցյալ տարի արտադրության մեջ ներդնել նորարարական 5100 առաջարկություն՝ 5 միլիոն ռուբլու տարեկան պայմանական տնտեսումով. ներդրվել է 6000 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություն, տարեկան ավելի քան 5,2 միլիոն ռուբլու պայմանական խնայողությամբ։ Այս գործում աշխատանքի ուսանելի փորձ ունեն «Պոլիվինիլացետատ» գործարանի պարտիական կազմակերպությունը և տնտեսական ղեկավարությունը։ 1961 թվականին գործարանում ներդրվել է 400 առաջարկություն՝ 480.400 ռուբլու տարեկան պայմանական խնայողությամբ։ Գործարանի չորս աշխատողից մեկը ռացիոնալիզատոր է։ Կարևորն այն է, որ ամեն մի բանվոր, ծառայող և ինժեներա-տեխնիկական աշխատող այս կամ այն ձևով մասնակցում է արտադրության կատարելագործմանը, արտադրանքի որակի բարելավմանը, ինքնարժեքի իջեցմանը, արտադրության կուլտուրայի բարձրացմանը։*

*Մեր ռեսպուբլիկայի համար հատուկ նշանակություն ունի էլեկտրաէներգիայի տնտեսումը։ Երևանն է թողարկում ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի զգալի մասը և այնտեղ է գտնվում էներգատար ձեռնարկությունների մեծ մասը. այդ հանգամանքը լուրջ պատասխանատվություն է դնում մայրաքաղաքի արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների վրա։ Այսպես. ներքին ռեզերվների հայտնաբերման, արտադրության լավագույն կազմակերպման շնորհիվ նրանց հաջողվեց անցյալ տարի 15 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիայի փոխարեն տնտեսել 20 միլիոն կիլովատ ժամ։*

*Ալյումինի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ֆրեզերային հաստոցների, «Պոլիվինիլացետատ», Կիրովի անվան, ավտոդողերի և մի շարք այլ գործարաններում ու ֆաբրիկաներում գործարկվեցին արտադրական նոր կարողություններ ու տեղամասեր, որոնցով զգալիորեն բարելավվեց վերոհիշյալ ձեռնարկությունների գործունեությունը, արտադրանքի նոր կարևոր տեսակների արտադրության կազմակերպումը։*

*1961 թվականին սոցիալիստական մրցության պարտավորությունները հաջողությամբ կատարեց քաղաքի շինարարական կազմակերպությունների մեծ մասը։ Սոցիալիստական մրցության պայմանագրով շինարարները քաղաքում շահագործման պետք է հանձնեին 160 հազար քառակուսի մետր բնա-*



digitised by A.R.A.R.@

կելի տարածություն. չնայած միասնական պատվիրատուի՝ Երևանի քաղաքա-
յին Սովետի գծով շահագործման չհանձնվեց տասը հազար մետր, այնուամե-
նայնիվ, օգտագործման հանձնվեց 171 հազար քառակուսի մետր բնակելի տա-
րածություն՝ այսինքն՝ 11 հազարով ավելի, քան նախատեսված էր սոցիալիս-
տական մրցության պայմանագրով:

Շինարարական կազմակերպություններն անցյալ տարի լրիվ կատարեցին
իրենց պարտավորությունները և շահագործման հանձնեցին լուսավորության,
առողջապահության և առևտրի օբյեկտների նախատեսված կառուցումները՝
յոթ մասսայական ու երեք գիշերօթիկ դպրոց, 15 մանկապարտեզ և մանկա-
մսուր, 44 խանութ, հասարակական սննդի 40 օբյեկտ, 200 մահճակալանոց
հիվանդանոց՝ Լենինյան շրջանում, 175 մահճակալանոց մանկական հիվան-
դանոց Օրջոնիկիձեի շրջանում և այլն:

Անցած տարի մայրաքաղաքի արդյունաբերական, շինարարական, տրանս-
պորտային կազմակերպությունները, աշխատավորների ամենաակտիվ մաս-
նակցությամբ, զգալի աշխատանք կատարեցին քաղաքի բարեկարգման, կա-
նաչապատման, սանիտարական վիճակի բարելավման ուղղությամբ: Ավարտ-
վեցին Կիևյան փողոցի շինարարությունը և ծառապատումը, հիմնականում
ավարտվեց Թբիլիսիի փողոցի շինարարությունը, որն այժմ քաղաքի ամենա-
գեղեցիկ մայրուղիներից մեկն է, ասֆալտապատվեց և բարեկարգվեց Բաքվի
փողոցը, ինչպես և Շիրակի փողոցի, Լերմոնտովի փողոցի (Չարենցի փողոցից
մինչև Ալավերդյան փողոց) շինարարությունը և այլն: Բարեկարգվեցին բազ-
մաթիվ բակեր, հրապարակներ և պուրակներ: Գործարկվեց Ջեյթուն թաղա-
մասը տանող տրամվայի գիծը:

Խորհրդային Ադրբեջանից ստացվող բնական գազը մեծ հեռանկարներ է
բացել մեր արդյունաբերության հետագա զարգացման, էներգետիկ բազայի
ամրապնդման և բնակչության կոմունալ-կենցաղային պայմանների բարե-
լավման համար: Այժմ անհրաժեշտ է ինչպես արդյունաբերության մեջ, այն-
պես էլ կենցաղում արագ անցնել բնական գազի օգտագործմանը: Սոցիալիս-
տական մրցության պայմանագրով նախատեսված 12-ի փոխարեն բնական գա-
զի օգտագործմանն անցան քաղաքի արդյունաբերական քսան ձեռնարկություն.
70-ի փոխարեն գազիֆիկացվել են 83 բնակելի տների կաթսայատները. հե-
ղուկ և բնական գազով գազիֆիկացված բնակարանների թիվը հասավ 16000-ի՝
15000-ի փոխարեն և այլն:

Շարունակելով սոցիալիստական մրցությունը եղբայրական Ուկրաինայի,
Վրաստանի և Ադրբեջանի մայրաքաղաքների աշխատավորների հետ, Երևանի
պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունները արդյու-
նաբերության, տրանսպորտի և շինարարության կոլեկտիվները 1962 թվականի
համար ստանձնել են նոր, ավելի բարձր պարտավորություններ: Ռեսպուբլի-
կայի մայրաքաղաքի աշխատավորները խոստացել են յոթնամյակի չորրորդ
տարում արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը գե-
րակատարել երեք տոկոսով, աշխատանքի արտադրողականության բարձրաց-
ման առաջադրանքը՝ 0,7 տոկոսով, զգալիորեն իջեցնել թողարկվող արտա-
դրանքի ինքնարժեքը, տնտեսել մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, հումք,
նյութեր, վառելանյութ և այլն:

Խոշոր միջոցառումներ են իրականացվելու նոր տեխնիկայի ու տեխնո-
լոգիայի արմատավորման, արտադրանքի նոր տեսակների յուրացման գծով:



Յուրացվելու է «Նաիրիտ— Լ—8»-ի, մեթիլ—վինիլկետոնի, բիխրոմատ—նատ-
րիումի, ացետատ—նատրիումի, հեղուկ մետաղից այլումինի ձողերի և շատ
այլ արտադրանքների արտադրությունը: Միայն էլեկտրատեխնիկական ար-
դյունաբերության գծով ընթացիկ տարում թողարկվելու է 14 նոր տեսակի ար-
տադրանք:

Շինարարները պարտավորվել են արդյունաբերական, բնակարանային և
կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարական-մոնտաժային աշխատանք-
ների տարեկան ծրագիրը կատարել ժամկետից շուտ, դեկտեմբերի 25-ին: Իսկ
աշխատանքների ծավալը փոքր չէ՝ կառուցվելու են 5300 նոր բնակարան, 9
դպրոցական շենք, մանկական 15 հիմնարկների, առևտրական և հասարակա-
կան սննդի 34 օբյեկտների շենքեր և այլն:

Գործի վերածելով մրցությամբ ստանձնած պարտավորությունները, մայ-
րաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, ամբողջու-
թյամբ վերցրած, հունիսի 26-ին կատարեցին համախառն արտադրանքի թո-
ղարկման առաջին կիսամյակի պլանը. կատարված են տեխնիկա-տնտեսական
մյուս ցուցանիշները:

Ակնբախ են ձեռք բերված հաջողությունները: Սակայն չի կարելի չնշել, որ
մայրաքաղաքի շատ սկզբնական պարտիական կազմակերպությունների, ինչ-
պես և շրջանային կոմիտեների աշխատանքներում տեղ են գտել լուրջ թերու-
թյուններ՝ արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի ղեկավար-
ման բնագավառում: Դեռևս անհրաժեշտ պայքար չի կազմակերպվում սոցիա-
լիստական մրցության պարտավորությունների անթերի կատարման համար:
Մի շարք ձեռնարկություններ չեն կատարում նույնիսկ պետական պլանային
առաջադրանքները: Անցած հինգ ամսում քաղաքի 32 ձեռնարկություններ թե-
րակատարել են պլանային առաջադրանքը: Դրա պատճառն այն է, որ պար-
տիայի առանձին շրջանային կոմիտեներ անբավարար են օգնում ու ղեկավա-
րում արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազ-
մակերպություններին:

Տարվա սկզբին ստանձնելով սոցիալիստական մրցության պարտավորու-
թյուններ՝ հոգ չեն տանում, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում, տեղամա-
սում, ցեխում մշակվի կազմակերպչական-տեխնիկական միջոցառումների
կոնկրետ պլան, ստեղծվի լայն հասարակական կարծիք, որպեսզի պարտիական
կազմակերպության՝ ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձ-
նաժողովներն իրենց ամենօրյա աշխատանքով նպաստեն այդ միջոցառումների
կենսագործմանը, գործերի վիճակի մասին ժամանակին ահազանգեն վերադաս
պարտիական, սովետական կազմակերպություններին: Մի՞թե պարտիական
կազմակերպությունների անբավարար աշխատանքի արդյունքը չէ, որ քաղաքի
արդյունաբերությունը 1961 թվականին չկատարեց ինքնարժեքի իջեցման ո՛չ
միայն սոցիալիստական պարտավորությունը, այլև պլանային առաջադրանքը,
ավելի քան 1288 հազար ռուբլով բարձրացավ ինքնարժեքը: Քաղաքի արդյու-
նաբերական ձեռնարկություններից 41-ը չկատարեցին ինքնարժեքի իջեցման
պետական պլանը. ըստ որում Լենինյան շրջանի 20 ձեռնարկություններում
1285 ռուբլով բարձրացավ արտադրանքի ինքնարժեքը. դրությունը գոհացու-
ցիչ չէր նաև Օրջոնիկիձեի և 26 Կոմիսարների անվան շրջաններում: Այդ բնա-
գավառում դեռևս լուրջ տեղաշարժեր չնկատվեցին ընթացիկ տարվա առաջին
ամիսներին:



digitised by A.R.A.R.@

Շատ ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներ և, հաճախ էլ պարտիական կազմակերպություններ համախառն արտադրանքի պլանի թերակատարումը, ինքնարժեքի բարձրացումը, ասորտիմենտի խախտումը աշխատում են բացատրել ոչ ճիշտ պլանավորմամբ. սակայն քաղաքի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների վատ աշխատանքը երբեք էլ չի կարելի բացատրել դրանով։ Այն ակներև է դառնում, երբ անցած տնտեսական տարվա արդյունքները համեմատում ենք 1960 թվականի հետ։ 1961 թվականին արդյունաբերական ձեռնարկությունների մեկ աշխատողի աշխատավարձը, 1960 թվականի համեմատությամբ, կազմում էր 105,6 տոկոս, իսկ մեկ աշխատողի արտադրանքը՝ 99,5 տոկոս։ Աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի միջև կա խզում ի վնաս աշխատանքի արտադրողականության՝ 6 տոկոսի չափով։ Այսպիսի աննորմալ վիճակ գոյություն ունի քաղաքի բոլոր շրջաններում։ Անշուշտ, այդ պատիվ չի բերում մեր մայրաքաղաքի կոմունիստներին։ Ինչո՞ւ մեկ աշխատողի արտադրանքը նույնիսկ չի հասել 1960 թվականի մակարդակին։ Բազմաթիվ և բազմապիսի պատճառներ են բերվում. նոր արտադրանքի յուրացում, գների փոփոխում, նոր ցեխերի կազմակերպում և այլն։ Սակայն շատ արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին ու տնտեսական ղեկավարներին քիչ է անհանգստացնում այդ հանգամանքը, սիստեմատիկաբար և գործիմացությամբ չեն վերլուծվում տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, միջոցառումներ չեն մշակվում դրությունը շտկելու համար։

Արտադրության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների նման վերլուծության բացակայությունը զգացվում է ամեն քայլափոխում, ինչպես խոշոր, այնպես էլ մանր ձեռնարկություններում։ Եթե սկզբնական պարտիական կազմակերպությունները տարեկան մի քանի անգամ քննարկում են համախառն արտադրանքի պլանի կատարման ընթացքը, ապա այդ բանը չի կարելի ասել ձեռնարկությունների էկոնոմիկայի հարցերի մասին։

Վերջերս պարտիայի քաղաքային կոմիտեի պլենումը լսեց Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի պարտիական կոմիտեի հաշվետվությունը։ Պարզվեց, որ այստեղ նույնպես 1961 թվականին մեկ աշխատողի թողարկած արտադրանքը ցածր է եղել 1960 թվականի մակարդակից։ Ճիշտ է, այս գործարանի վրա որոշ չափով բացասաբար է անդրադարձել գների փոփոխումը, սակայն քիչ ազդեցություն չի ունեցել նաև մեծ չափերի հասնող անավարտ արտադրանքը։ Եթե մինչ 1961 թվականի հունվարի մեկը գործարանի ցեխերում եղել է 2654 հազար ռուբլու անավարտ արտադրանք, ապա մինչև 1962 թվականի հունվարի մեկը այն հասել է 5107 հազար ռուբլու, այսինքն կրկնապատկվել է։ Այդ անավարտ արտադրանքի ստեղծման համար ծախսվել է մոտ մեկ ամսվա աշխատավարձի ֆոնդ, որը բացասաբար է անդրադարձել աշխատանքի արտադրողականության ցուցանիշի կատարման վրա։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա բացասաբար է անդրադառնում արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման անբավարար վիճակը, թողարկվող խոտան արտադրանքը, ուռճացած վարչական ապարատը և շատ այլ գործոններ։

Անհրաժեշտ է պարբերաբար վերլուծել ձեռնարկության տնտեսական գործունեությունը, որոշել, թե կիրառվող միջոցառումներից որոնք են առաջնա-



յինն ու երկրորդականը, դրանց նպատակահարմարությունը, շահութաբերությունը։ Չպետք է մոռանալ, որ բացի անվտանգության տեխնիկայի միջոցառումներից մնացած բոլոր միջոցառումները անպայման պետք է շահութաբեր լինեն։

Սկզբնական պարտիական կազմակերպություններն ու շրջանային կոմիտեները պետք է արմատապես փոխեն վերաբերմունքը ձեռնարկությունների տնտեսական գործունեության նկատմամբ, հասնեն այն բանին, որ ամենուրեք ստեղծվեն տնտեսական գործունեության վերլուծման արտահաստիքային բյուրոներ, բաժիններ, որտեղ ընդգրկվեն լավագույն, իրենց գործը սիրող մասնագետներ։

Մեր տնտեսական ղեկավարները պետք է ուշադիր լինեն այդ բյուրոների աշխատանքի նկատմամբ, ժամանակին ընթացք տան արված առաջարկություններին, ստեղծեն նորմալ պայմաններ հասարակական հիմունքներով գործող բաժինների և բյուրոների աշխատանքի համար։ Լավ կլինի, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները և շրջանային կոմիտեները ուսումնասիրեն Թաթարական տնտեսական շրջանի Ժողտնտխորհի աշխատանքի փորձը. այդ շրջանում չկա և ոչ մի ձեռնարկություն, որը չկատարի պետական պլանային առաջադրանքը։ Այդ բանին նրանք հասել են ամենից առաջ ձեռնարկությունների ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման շնորհիվ, որի համար մոբիլիզացրել են արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվներին, պարտիական կազմակերպություններին։ Կարևորը և ուսանելին այստեղ այն է, որ շարքային բանվորից մինչև ղեկավարը անհանգստանում, ապրում է ձեռնարկության կյանքով։

Եթե այդ ձևով աշխատեին Երևանի ձեռնարկությունները, ապա 1961 թվականին թույլ տրված 1158 հազար ռուբլու խոտան արտադրանքի ճնշող մասը չէր լինի, կամ հնարավոր կլիներ խուսափել 2883 հազար ռուբլու ոչ արտադրական ծախսերի մի մասից։ Իսկ այդ ամենը հնարավորություն կընձեռեր կատարելու արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանային առաջադրանքը։ Եթե մայրաքաղաքի բոլոր պարտիական կազմակերպությունները և շրջանային կոմիտեները տարվա ընթացքում ինչպես հարկն է զբաղվեն արտադրական ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վերլուծությամբ, արդյունքների մասին տեղյակ պահեն յուրաքանչյուր աշխատողի, կազմակերպեն գործարար սոցիալիստական մրցություն, ապա 1962 թվականի տնտեսական տարին կփակենք ավելի լավ ցուցանիշներով։

Աշխատանքի արդյունքներն ակնհայտ ցույց են տալիս, որ շատ ձեռնարկություններում սոցիալիստական մրցությունը ձևական է։ Ձևականություն կա նույնիսկ պարտավորությունների ստանձնման գործում։ Առանձին գործարանների կոլեկտիվներ ստանձնում են այնպիսի պարտավորություններ, որոնք պետք է կատարեն առանց սոցիալիստական մրցության պայմանագրի, կամ էլ վերցնում են իրենց ունեցած հնարավորություններից ցածր պարտավորություններ։ Դրա արդյունքը լինում է այն, որ ձեռնարկությունը կատարում է սոցիալիստական մրցության պարտավորությունը, սակայն առանց մրցության, առանց համառ ու քրտնաջան աշխատանքի։

Այդ տեսակետից հատկանշական են Շահումյանի շրջանի մանվածքային ֆաբրիկայի 1961 և 1962 թվականներին ստանձնած պարտավորությունները։ Այսպես, ֆաբրիկայի 1961 թվականի պարտավորությունների մեջ գրված է.—



digitised by A.R.A.R.@

«Յանկապատել և մշտական սարքին վիճակում պահել բոլոր մեքենաների
պտտվող և հատվածող մասերը». ստացվում է, որ կարելի է կոպիտ կերպով
խախտել անվտանգության տեխնիկայի կանոնները, պատասխան չտալ դրա
համար և ապա պարտավորվել վերացնել անշնորհք աշխատանքի հետևանքով
առաջացած թերությունները։ Այնուհետև գրված է. «Ելնելով ցեխերի աշխա-
տանքի բնույթից, ձեռք բերել հատուկ ձևի արտահագուստներ, յուրաքանչյուր
ցեխի բանվոր-ծառայողների համար»։ Կարդում ես և չես հասկանում, թե ի՞նչ
են ուզում ասել, չէ՞ որ աշխատանքային օրենսդրությունը նախատեսում է,
թե ո՛ր բանվորական տեղը ի՛նչ արտահագուստ է ստանալու, և դա օրենք է,
ու ոք իրավունք չունի խախտելու այն։ Մի՞թե օրենքի կատարումը կարող է
դառնալ սոցիալիստական մրցության պարտավորություն։ Նման այլ կետեր էլ
կան, որոնք կամ օրենք են, կամ պայմանավորված չեն ձեռնարկության աշ-
խատանքով, իսկ պարտավորությունների այն մասը, որը կախված է ֆաբ-
րիկայի աշխատանքից՝ մեծ մասամբ չի կատարված։
Եվ ահա, որպեսզի 1962 թվականի բոլոր պարտավորությունները կա-
տարվեն, ֆաբրիկայի ղեկավարները դիմել են այլ քայլի, վերցրել են այնպիսի
պարտավորություններ, որոնց կատարումը իրենց կոլեկտիվի համար առանձ-
նապես դժվար չէ։ Այսպես, ֆաբրիկայի սոցիալիստական մրցության պայմա-
նագրով նախատեսվում է մինչև տարվա վերջը տալ 17 հազար ռուբլու արտա-
պլանային արտադրանք. մինչդեռ միայն տարվա առաջին եռամսյակում տըր-
ված է 31 հազար ռուբլու արտապլանային արտադրանք. կամ՝ նախատեսված
է տարվա ընթացքում հումքի խնայողության հաշվին արտադրել 1,5 տոննա
մանվածք, մինչդեռ միայն առաջին եռամսյակում տրված է մեկ տոննա ման-
վածք. պարտավորությամբ նախատեսված է ամբողջ տարվա ընթացքում տալ
30 հազար մետր ոչ գործվածքային արտադրանք, սակայն միայն առաջին եռ-
ամսյակում պլանից ավելի թողարկվել է 48 հազար մետր. նախատեսված է
մանող մեքենաների արտադրողականությունը բարձրացնել 0,5 տոկոսով,
սակայն միայն առաջին եռամսյակում այն հասել է ութ տոկոսի։
Ինչպես կարելի է տեսնել, այս ֆաբրիկայում (դիրեկտոր ընկ. Կիրակոս-
յան, պարտբյուրոյի քարտուղար՝ ընկ. Ստեփանյան, ֆաբկոմի նախագահ՝
ընկ. Մարգարյան) տարվա պարտավորությունների զգալի մասը գերակատար-
վել է դեռևս առաջին եռամսյակում, և ֆաբրիկայի ղեկավարները կարող են
ամեն տեղ զեկուցել, որ հաջողությամբ կատարում են սոցիալիստական մըր-
ցությամբ ստանձնած պարտավորությունները։ Ու՞մ է պետք այսպիսի մըր-
ցությունը, ի՞նչ է տալիս այն։ Մի՞թե այն կարող է մոբիլիզացնել կոլեկտի-
վին՝ դժվարությունները հաղթահարելու, արտադրության մեջ ընդհանուր վեր-
ելք ստեղծելու գործում։ Անշուշտ, ո՛չ։
Դժբախտաբար այս կարգի մրցության հեղինակները երբեմն շատ ավելի
լավ համբավ, պատիվ են ունենում, քան նրանք, ովքեր վերցնում են ռեալ,
նույնիսկ մի փոքր բարձր պարտավորություններ, սակայն ինչ-ինչ պատճառ-
ներով աննշան չափով թերակատարում են։
Բայց այդ չի նշանակում, որ կարելի է ձախողել սոցիալիստական մրցու-
թյան պարտավորությունների կատարումը և պատասխան չտալ դրա համար։
Անցյալ տարի ավտոպահեստամասերի գործարանում ձախողվեց սոցիալիս-
տական պարտավորությունների կատարումը (դիրեկտոր ընկ. Բունիաթյան,
պարտկազմակերպության նախկին քարտուղար ընկ. Մկրտչյան, գործարկոմի



նախագահ ընկ. Դարբինյան)։ Ջնայած գործարանը 1961 թվականի համախառն
արտադրանքի պլանը լրիվ կատարեց, բայց չկատարեց նույնիսկ պետական
պլանային այնպիսի առաջադրանքներ, ինչպես՝ աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացումը, ինքնարժեքի իջեցումը, նոր տեխնիկայի ներդրումը
և այլն։ Այդ գործարանում 630 հազար ռուբլով բարձրացավ արտադրանքի
ինքնարժեքը։ Նույն պատկերը գոյություն ունի Կաբելի գործարանում (դիրեկ-
տոր ընկ. Տիգրանյան, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Արիստա-
կեսյան, գործարկոմի նախագահ ընկ. Գասպարյան). այստեղ ևս կատարվել է
համախառն արտադրանքի պլանը, սակայն սոցիալիստական մրցությամբ ըս-
տանձնած պարտավորությունների մեծ մասը չի կատարվել և 473 հազար ռուբ-
լով բարձրացել է արտադրանքի ինքնարժեքը։ Ժամացույցի գործարանը (դի-
րեկտոր ընկ. Աթանեսյան, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Քալան-
թարյան, գործարկոմի նախագահ ընկ. Մնացականյան) կատարելով համա-
խառն արտադրանքի պլանը, չի կատարել սոցիալիստական պարտավորություն-
ների զգալի մասը, թույլ է տվել 80 հազար ռուբլու ինքնարժեքի բարձրացում։
Նման պատկեր գոյություն ունի նաև քաղաքի մի շարք այլ խոշոր ու մանր ար-
դյունաբերական ձեռնարկություններում։

Ստեղծված վիճակն արդյունք է այն բանի, որ պարտիական, արհմիութե-
նական և կոմերիտական շատ կազմակերպություններում տարիներ շարունակ
մշակվել է աշխատանքի արատավոր պրակտիկա. ձեռնարկության աշխա-
տանքը գնահատվել է միայն համախառն արտադրանքի պլանի կատարմամբ,
իսկ արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացմանը, ասորտիմենտի, կուտակումների, նոր տեխնիկայի ներ-
դրման պլանային առաջադրանքներին տրվում է երկրորդական նշանակություն։
Պարտիայի շրջանային կոմիտեները պարտավոր են կազմակերպական լուրջ
աշխատանք կատարել տեղերում, որպեսզի սկզբնական պարտիական կազմա-
կերպությունները ամեն ինչ անեն համախառն արտադրանքի պլանից բացի
ձեռնարկության մյուս տեխնիկա-տնտեսական առաջադրանքները կատարելու
համար։

Մեր շինարարական կազմակերպություններն սկսել են ավելի լավ ու ավելի
արագ կառուցել։ Ջնայած շինարարական հրապարակները մշտապես համալըր-
վում են նոր մեխանիզմներով, ապահովված են որակյալ կադրերով, անհրա-
ժեշտ շինանյութերով, սակայն կառուցողական աշխատանքների տեմպերը գո-
հացուցիչ չեն։

Ամենից առաջ դա վերաբերում է բնակարանային շինարարությանը։ Անց-
յալ տարի № 1 շինտրեստը (կառավարիչ ընկ. Մելիքյան, պարտկազմակերպու-
թյան քարտուղար ընկ. Սեդրակյան) և № 3 շինտրեստը (կառավարիչ ընկ. Գյան-
ջունցյան, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Մովսիսյան) չկատարե-
ցին քաղսովետի գծով բնակարանների շահագործման հանձնելու պետական ա-
ռաջադրանքները, իսկ հանձնված շենքերի շրջակայքի բարեկարգման աշխա-
տանքները մինչև հիմա էլ չեն ավարտվել։ Դրությունը մխիթարական չէ նաև
ընթացիկ տարում. անցած հինգ ամսում շահագործման չի հանձնվել 16646
քառ. մետր բնակելի տարածություն։

Դրա պատճառն այն է, որ կառույցներում դեռևս վատ է կազմակերպված
աշխատանքը, արդյունավետ չեն օգտագործվում եղած մեխանիզմները, շինա-
րարների շրջանում թույլ է ծավալված գործարար սոցիալիստական մրցությունը,



digitised by A.R.A.R.@

առաջավոր փորձի արմատավորումը: Շինարարական որոշ կազմակերպություններում անբավարար վերահսկողության հետևանքով լուրջ պայքար չի տարվում պետական միջոցները խնայողաբար ծախսելու համար, թույլ են տրվում միջոցների հափշտակման փաստեր: Իսկ այդ հարցերով պատշաճ կերպով չեն զբաղվում շինարարական տրեստների ղեկավարները, պարտիական և արհմիութենական կազմակերպությունները:

Բազմաթիվ շենքեր շահագործման են հանձնվում խոշոր պակասություններով, մինչև վերջ չի բարեկարգվում շրջապատը: Իսկ դա միանգամայն իրավացի դժգոհություն է առաջացնում բնակիչների շրջանում: Պետք է կառուցել ո՛չ միայն արագ և էժան, այլև բարձր որակով:

Իրենց առջև կանգնած խնդիրները հաջողությամբ կատարելու համար Երևանի պարտկազմակերպությունները պետք է վճռականորեն բարելավեն պարտիական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը, գլխավորեն մասսաների աշխատանքային ակտիվությունը: Պետք է նոր թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը, մասսայական վերահսկողություն սահմանել ստանձնած պարտավորությունների կատարման վրա: Այդ գործում մեծ է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների շարժման դերը, շարժում, որն օրավուր ծավալվում է: Այժմ մայրաքաղաքի 15 արդյունաբերական ձեռնարկություններ, 600 ցեխեր, տեղամասեր և բրիգադներ պայքարում են այդ բարձր կոչմանն արժանանալու համար: Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ ընդլայնել այդ համաժողովրդական հայրենասիրական շարժումը, ընդհանրացնել ու տարածել նրա մասնակիցների առաջավոր փորձը:

Եղբայրական Ուկրաինայի, Վրաստանի և Ադրբեջանի մայրաքաղաքների և Երևանի աշխատավորների միջև օրավուր աճող եղբայրական մեծ բարեկամությունը և ծավալվող սոցիալիստական մրցությունը կօգնի նվաճելու յոթնամյակի չորրորդ տարվա բարձունքները, հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ XXII համագումարի պատմական որոշումները:

---

# ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՔԱՂԱՔԸ

(Ճարտարապետի խոհերը)

## Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Չեմ հիշում երբ և որտեղ, կարդացել եմ մի նովել: Մի պատանի հովիվ, որն իրենց գյուղից և նրա արոտավայրերից բացի ուրիշ տեղ չէր եղել, պատահմամբ ընկնում է մի մե՜ծ, շա՜տ մեծ քաղաք... Քաղաքի հրաշալիքներով կախարդված, նա հետզհետե մտնում է քաղաքի խորքը: Երկինք խոյացող հսկա շենքերը, սրընթաց մեքենաները, շլացուցիչ զարդարանքները, աղմուկը հմայում, գերում են նրան և տանում առաջ: Բայց ի վերջո նա հոգնում է և ձանձրանում անընդհատ կրկնվող, նույնանման պատկերներից և ուզում է հանգստանալ... Բայց որտե՞ղ. նա սաստիկ ծարավում է և փնտրում է մի աղբյուր, մի գետակ, որ հագեցնի իր ծարավը... Բայց իզուր: Նա դիմում է հանդիպող մարդկանց, բայց բոլորը շտապում են, խելակորույս վազելով այս ու այն կողմ, անտարբեր հրելով նրան: Նա դիմում է ուրիշների, բայց դարձյալ ապարդյուն. բոլորը զբաղված են իրենց հոգսերով և ժամանակ չունեն նրան պատասխանելու: Հոգնած ու հուսահատ նա ետ է դառնում, փնտրելով իր եկած ճանապարհը, բայց ավելի է խճճվում... Եվ հանկարծ նրա առաջ բացվում է մի լայն, ազատ տարածություն, նա դուրս է գալիս քաղաքի միջով անցնող գետի ափը: Պատանին վազում է դեպի ափը, կարծես հարազատին հանդիպած լիներ: Այո՛, դա իրենց գետն է, գյուղի մոտով անցնող գետը... Վերջապե՜ս: Եվ պատանին, հույս չունենալով ազատվել քաղաքի կաշկանդող միջավայրից, իրեն նետում է գետը, որը նրան պետք է հասցներ իրենց գյուղը:

Քաղաքի և գյուղի հակադրության վերացման հարցը, որը դրվել է դեռևս Մարքսի ու Էնգելսի կողմից («Կոմունիստական մանիֆեստ»), այժմ պրակտիկորեն կենսագործվում է սովետական ժողովրդի կողմից և հանդիսանում կոմունիզմի կառուցման հիմնական խնդիրներից մեկը:

Սոցիալիստական շինարարության ընթացքում հիմնականում վերացնելով քաղաքի և գյուղի սոցիալական հակասությունները, Սովետական Միությունում հաստատուն հիմքեր են ստեղծվել առաջիկայում լիովին վերացնելու գյուղի և քաղաքի տարբերությունը, ստեղծելով բարեկեցիկ, լիարժեք և հավասար կյանքի պայմաններ թե՛ քաղաքներում և թե գյուղերում:

ՍՄԿԿ նոր Ծրագրում՝ շինարարության կարևորագույն խնդիրների շարքում նշված է. «Մեծ նշանակություն են ստանում քաղաքաշինությունը, ճարտարապետությունը և հատակագծումը բարեկարգ, հարմար, կառուցման ու շահագործման տեսակետից խնայողաբեր քաղաքների և այլ բնակավայրերի արտա-



digitised by A.R.A.R.@

գրական, բնակելի և հասարակական շենքերի ստեղծման համար»։ Այնուհետև բնակավայրերի բարեկարգման կարևորագույն միջոցառումների շարքում հիշատակված են՝ «...կիրառել միջոցառումների սիստեմ քաղաքներում և մյուս բնակավայրերում կենսապայմանների հետագա առողջացման ուղղությամբ, ներառյալ դրանց կանաչապատումը, ջրամատակարարումը, վճռական պայքար մղել օդի, հողի և ջրի աղտոտման դեմ»։

Հատուկ նշվում են ոչ մեծ բնակավայրերի առավելությունները. «Ավելի ու ավելի կզարգանան փոքր ու միջին բարեկարգ քաղաքները, որը թույլ կտա բարելավել և առողջացնել կյանքի պայմանները»։

Կարդալով վերոհիշյալ մեծանշանակ հատվածները, մեզ հուզում են քաղաքաշինության մի շարք հարցեր, որոնց թվում և այն, թե բնությունը որպիսի տեղ պետք է գրավի մեր քաղաքներում։ Սա պարապ, կամ թե միայն էսթետիկական հարց չէ, այլ մարդու համար կենսական նշանակություն ունի, որը հուզում և զբաղեցնում է և՛ քաղաքաշինարարներին և՛ հասարակական գործիչներին և ժամանակակից բնակավայրերում ապրող ամեն մի մարդու։

Ժամանակին անդրադառնալով քաղաքի և գյուղի հակադրության վերացման ուղիների պրոբլեմին, Վ. Ի. Լենինը պաշտպանել է Ֆ. Էնգելսի այն տեսակետը, թե ապագայում խոշոր արդյունաբերությունը պետք է բաշխվի երկրում առավել հնարավոր համաչափությամբ։ Սակայն այդ առթիվ նրա մոտ կարդում ենք հետևյալ խիստ շահեկան տողերը. «Բայց կապիտալիստական հասարակության մեջ մեծ քաղաքների առաջադիմականության վճռական ընդունումն ամենևին չի խանգարում մեզ մեր իդեալի մեջ մտցնել (և գործողության մեր ծրագրի մեջ, որովհետև անիրագործելի իդեալները մենք թողնում ենք պ. պ. Ստրուվեներին ու Բերդյաևներին) քաղաքի և գյուղի հակադրության ոչնչացումը։ Ճիշտ չէ, թե դա հավասարազոր է գիտության և արվեստի գանձարաններից հրաժարվելուն։ Հենց ճիշտ դրա հակառակը. դա անհրաժեշտ է նրա համար, որպեսզի այդ գանձարանները դարձնենք մատչելի ամբողջ ժողովրդին, որպեսզի ոչնչացնենք գյուղական բնակչության միլիոնների այն խորթությունը կուլտուրայից, որ Մարքսն այնպես դիպուկ կերպով անվանել է «գյուղական կյանքի իդիոտիզմ»։ Եվ ներկայումս, երբ հնարավոր է էլեկտրական էներգիայի հաղորդումը տարածության վրա, երբ տրանսպորտի տեխնիկան այնքան է բարձրացել, որ կարելի է պակաս ծախքերով (այժմյան ծախքերի համեմատությամբ) ուղևորներ փոխադրել մի ժամում ավելի քան 200 վերստ արագությամբ, բացարձակորեն չկա տեխնիկական ոչ մի խոչընդոտ, որպեսզի գիտության ու արվեստի սակավաթիվ կենտրոններում դարերով կուտակված գանձարաններից օգտվի ամբողջ բնակչությունը, որ տեղավորված կլինի ավելի կամ պակաս համաչափ ամբողջ երկրում։

Եվ եթե ոչինչ չի խանգարում քաղաքի և գյուղի հակադրության ոչնչացմանը (ընդ որում, իհարկե, այդ ոչնչացումը պետք է պատկերենք ոչ թե մեկ ակտի, այլ մի ամբողջ շարք միջոցառումների ձևով), ապա այն պահանջում է ամենևին ոչ միայն «էսթետիկական զգացումը»։ Մեծ քաղաքներում, Էնգելսի արտահայտությամբ, մարդիկ խեղդվում են իրենց սեփական աղբի մեջ, և պարբերաբար բոլորը, ով կարող է, փախչում են քաղաքից՝ թարմ օդ և մաքուր ջուր որոնելու» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 5, էջ 200—202)։

Այսպիսով, գերադասություն չտալով ո՛չ շատ մեծ քաղաքներին ո՛չ էլ



գյուղին, նշվում են երկուսի բացասական և դրական կողմերը, նպատակ ունենալով երկուսից էլ ընտրել նրանց առավելությունները։

Այնուհետև, Վ. Դ. Բոնչ Բրուևիչը, որը երկար տարիներ աշխատել է Վ. Ի. Լենինի հետ, իր հիշողություններում գրում է. «...Վլադիմիր Իլյիչը մեծ նշանակություն էր տալիս քաղաքի զարդարանքին (украшению) և նա հրճվանքով երազում էր այն մասին, որ «մեր Մոսկվան», «մեր Պիտերը» և մեր մյուս մեծ քաղաքները պետք է զարդարվեն, կանաչապատվեն, պետք է ունենան խիստ մաքուր այգիներ և հրապարակներ, որտեղ կկարողանան զբոսնել և հանգստանալ ժողովրդի հոծ մասսաները։ Բայց Վլադիմիր Իլյիչը տանել չէր կարողանում որևիցե շեղում բնականությունից դեպի այլանդակություն, դեկադենտշչինա[1], այլասերվածություն (извращенность)»։

Չերնիշևսկին իր «Ի՞նչ անել» վեպում այսպես էր նկարագրում ապագա քաղաքները... «Մեծ, թեթև, լուսավոր շենքեր, որոնց ճարտարապետության և ներքին կահավորման մեջ օգտագործված են ամրությամբ և գեղեցկությամբ ամենալավ նյութերը, կանգնած են արտերի, մարգագետինների, այգիների և անտառների միջև. Նրանց մեջ ապրում են երջանիկ մարդիկ, որոնք չգիտեն շահագործումը և դասակարգային հասարակության հակասությունները, նրանք հաճույքով աշխատում են և ուրախ հանգստանում բնության և հոյակապ ճարտարապետության մեջ»։

Ինչպիսի՜ խորաթափանցությամբ է պատկերել ռուս մեծ ռևոլյուցիոներ դեմոկրատը ապագա սոցիալիստական քաղաքները։ Ինչպիսի՜ տեղ է տվել մեծ գեղագետը բնությանը։ Եվ դա պատահական չէ։ XIX դարի վերջում՝ կապիտալիզմի վերելքի ու ծաղկման այդ շրջանում Եվրոպայում և Ամերիկայում բուռն կերպով զարգացան նաև քաղաքները։ Սակայն չնայած նրան, որ քաղաքների բարեկարգման համար ստեղծվեցին տեխնիկական սարքավորման նոր միջոցներ—գազ, էլեկտրականություն, երկաթուղի, ավտոմեքենա և այլն, քաղաքների հիգիենիկ դրությունը վատթարացավ։

Շինարարությունը կատարվում էր տարերայնորեն։ Նախաձեռնողը մասնավոր սեփականատերն էր, հետևաբար ամենուրեք իշխում էր մասնավոր շահը և ոչ թե հասարակականը։ Անկում էին ապրում և քաղաքաշինարարական արվեստը, ճարտարապետությունը, ծաղկում էին էկլեկտիզմը, «մոդեռնը», կապիտալիստական քաղաքը ճգնաժամ էր ապրում։

Դրությունն այնքան լուրջ էր, որ բուրժուազիան, ապրելով անհամեմատ ավելի լավ պայմաններում, նույնպես մտահոգվեց քաղաքաշինարարական հարցերով, քաղաքների, մանավանդ մեծ քաղաքների վերակառուցմամբ։ Առաջ քաշվեցին քաղաքաշինարարական զանազան գաղափարներ, որոնցից ուշադրության արժանի է անգլիական հասարակական գործիչ Էբենայզեր Հովարդի առաջարկը՝ «քաղաք այգիների» մասին։

Հովարդը, ժխտելով մեծ քաղաքների նպատակահարմարությունը, առաջարկում էր ստեղծել փոքր (մինչև 35 հազար բնակիչ ունեցող) քաղաքներ, որտեղ բնակչությունը, կապված լինելով արդյունաբերության հետ, պետք է զբաղվեր նաև հողագործությամբ։

Այդ տեսությունը, որը մասամբ առնչվում էր մեծ ուտոպիստներ Թովմաս Մորի, Սեն-Սիմոնի, Ֆուրիեի և Կամպանելայի («Արևի քաղաք») թեորիան-

[1] Պետք է հասկանալ «ֆորմալիզմի» իմաստով (Հ. Ի.)։



digitised by A.R.A.R.@

րին, ուներ արժեքավոր մտքեր, բայց այն էս ուտոպիստական էր, որոշ հար-
ցերում՝ նույնիսկ հետադիմական: Այդ իդեաները գործնական քիչ արդյունք
տվին: Սակայն Հովարդի և նրա հետևորդների ջանքերը բարերար ազդեցու-
թյուն ունեցան քաղաքաշինարարական արվեստի զարգացման վրա:

Հետադիմականը և սխալը այդ տեսության մեջ այն էր, որ քաղաքը նրանք
ետ էին քաշում դեպի գյուղ, մինչդեռ անհրաժեշտ էր պահպանել քաղաքի դրա-
կան կողմերը, օժտել նրան գյուղին հատուկ առավելություններով, միաժա-
մանակ վերացնելով գյուղի և քաղաքի էական տարբերությունները:
Ժամանակակից հայտնի ճարտարապետ քաղաքաշինարար Լ. Կորբյուզեն և

ուրիշներ, նույնպես նշելով կապիտալիստական քաղաքների ճգնաժամային
դրությունը, մեր դարի երեսնական թվականներին (կոնստրուկտիվիզմի ծաղկ-
ման շրջանում) առաջ քաշեցին քաղաքների զարգացման ուրբանիստական տե-
սությունը — մեծ քաղաքի բոլոր էլեմենտների տեխնիկական բարձր սարքա-
վորում և մեքենայացում:

Բուրժուական ինտելիգենցիայի տաղանդավոր շատ ներկայացուցիչների
նման Կորբյուզեն, զգալով կապիտալիստական հասարակության սոցիալական
հակասությունները, ջանում էր վերացնել դրանք քաղաքաշինարարությամբ: Նա
առաջարկում է անհապաղ միջոցներ ձեռք առնել քաղաքների դրությունը բար-
վոքելու համար և սիմվոլիկ արտահայտությամբ նախազգուշացնում. «քա-
ղաքաշինարարություն կամ հեղափոխություն», չգիտակցելով, որ հենց հե-
ղափոխությունն է, որ պետք է ստեղծի անհրաժեշտ պայմաններ քաղաքաշի-
նարարության դժվարությունները վերացնելու, քաղաքների վերակառուցման
մասին մարդկության բոլոր ժամանակների առաջավոր մարդկանց գաղափար-
ները կենսագործելու համար:

Սոցիալիստական երկրների փորձը ցույց է տալիս, թե քաղաքաշինարա-
րության համար ինչպիսի լայն հնարավորություններ են ստեղծվում արտա-
դրական միջոցների և, հատկապես, հողի համայնացման, անտագոնիստական
դասակարգերի և շահագործման բացակայության պայմաններում:

Սովետական քաղաքաշինարարության նպատակն է պլանային զարգաց-
ման և մարդու համար ապրելու, աշխատելու ու հանգստանալու ամենաբարե-
նպաստ պայմաններ ստեղծել. այն չի կաշկանդվում ուրբանիստական կամ
դեզուրբանիստական, այսինքն՝ մեծ քաղաքների, նրանց համատարած մեքե-
նայացման, կամ դրա ժխտման, գյուղական կյանքի փառաբանման սկզբունք-
ներով, այլ հենվելով մարդկության ստեղծած քաղաքաշինարարական ամբողջ
ժառանգության վրա, միշտ էլ ընտրում է նրա պրոգրեսիվ կողմերը:

Վերցնենք առաջին կարևոր խնդիրներից մեկը՝ քաղաքի առավելագույն
մեծության հարցը: Խոշոր քաղաքները տարերային զարգացման հետևանքով
ունեցել են գիպերտրոֆիկ (գերաճած) չափեր. ահա, օրինակ, Նյու-Յորքը՝ 14
միլիոն բնակչությամբ, Լոնդոնը՝ 11 միլիոն, որը կազմում է Անգլիայի բնակ-
չության 20 տոկոսից ավելին, իսկ Փարիզի բնակչության թիվը հասնում է երկ-
րի քաղաքների բնակչության 35 տոկոսին (5 միլիոնից ավելի): Այդ երևույթը
աշխարհի բոլոր քաղաքաշինարարները համարում են բացասական և գտնում
են, որ անհրաժեշտ է ո՛չ միայն սահմանափակել դրանց հետագա աճը, այլև
ապակենտրոնացնել բնակչությանը: Այդ նպատակով խոշոր քաղաքների շրջա-
կայքում կառուցվում են, այսպես կոչված՝ «քաղաք արբանյակներ»: Քաղաք
արբանյակներ են կառուցվում Լոնդոնի, Գլազգոյի, Ստոկհոլմի, Հելսինկիի և



և շատ այլ քաղաքների շուրջը: Այդպիսիք կառուցվում են նաև Մոսկվայի շուր-
ջը՝ քաղաքամերձ կանաչ գոտուց դուրս:

Սակայն լավ է թե վատ, մեծ քաղաքներն ստեղծվել են ու զարգանում են
և չպետք է մոռանալ, որ քաղաքները բացասական կողմերով հանդերձ իրենց
ստեղծման առաջին իսկ օրից եղել են և մնում են քաղաքակրթության օրրանը,
մարդկության մշակույթի, գիտության, արվեստի, տեխնիկայի, տնտեսական
զարգացման օջախներ, որտեղ կենտրոնացված են ամեն մի երկրի բոլոր բնա-
գավառների շարժիչ ուժերը: Քաղաքներն են պրոլետարիատի ամենակազմա-
կերպված մասի և ռևոլյուցիոն շարժումների կենտրոնը:

Ծի՞շտ կլիներ արդյոք ժամանակակից քաղաքներին հակադրել փոքր բնա-
կավայրերը, գյուղը, որտեղ կյանքը մոտ է բնությանը և զերծ մեծ քաղաքի
թերություններից: Այդպիսի մոտեցումը ո՛չ միայն սխալ, այլև անիրագործելի
կլիներ, որովհետև մեծ քաղաքներն այնպիսի նյութական հարստություն են,
որոնցից հնարավոր չէ հրաժարվել:

Եթե քաղաքների բացասական կողմերից շատերը՝ ծուխը, վնասակար գա-
զերը, փոշին և աղմուկը գործարանների, մեքենաների, տեխնիկայի զարգաց-
ման արդյունք են, ապա այդ նույն տեխնիկայի զարգացման ժամանակակից
մակարդակը հնարավորություն է ընձեռում վերացնելու դրանք: Եվ կգա ժամա-
նակ, երբ հզոր տեխնիկան ո՛չ միայն կվերացնի այդ թերությունները, այլև
դրանց միջոցով մարդիկ կկարողանան արհեստականորեն ստեղծել ցանկացած
«բնական» պայմանները, անկախ բնության քմահաճույքից:

Կապիտալիստական երկրներում և, հատկապես, Հյուսիսային Ամերիկա-
յում, ապահովված խավերը քաղաքներից փախչում են մերձքաղաքային ամա-
ռանոցային վայրերը, ապրում առանձնատներում, շարունակելով աշխատել
մեծ քաղաքներում:

Սակայն մերձքաղաքային ավանները հետզհետե անխուսափելիորեն «կլան-
վում» են քաղաքի հետագա աճով, դառնում նրա մասը. վերանում են քաղաքի
կենտրոն և ծայրամաս հասկացությունները: Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի Ատ-
լանտյան ափերով 950 կիլոմետր երկարությամբ ձգվում է քաղաքային գոյա-
ցումների անընդհատ զանգվածների շղթա, սկսած Բոստոնից (ներառյալ Նյու-
Յորքը և Ֆիլադելֆիան) մինչև Վաշինգտոն, որտեղ ապրում է երկրի բնակչու-
թյան մոտ 21 տոկոսը: Այսպիսով բնությունը որպես քաղաքի շուրջը, նրա
ծայրամասերում, մերձքաղաքային գոտում գտնվող տարածություն, ենթակա
է անընդհատ նահանջելու, տեղի տալու, կամ վերանալու, քաղաքի հետագա
զարգացման և նրա շուրջը նոր բնակավայրերի գոյացման հետևանքով: Դրա-
նից ազատվելու ամենաարդյունավետ միջոցն այն է, որ բնությունը լինի ոչ թե
քաղաքից դուրս, այլ նրա մեջ, նրա բոլոր մասերում, ամենափոքր միավորում՝
բնակելի բակում, թաղամասում, միկրոռայոնում, բնակելի շրջանում: Այն
պետք է զգացվի քաղաքի ամբողջ տարածության՝ նույնիսկ կառուցապատվող
մակերեսների վրա, պահպանելով և օգտագործելով տեղանքի բնական առանձ-
նահատկությունները՝ ռելիեֆը, ջուրը, կանաչը, առանձին բլուրները, անգամ
ժայռերը, որոնց վերացումը ավելորդ ծախսեր է առաջացնում, մինչդեռ դրանք
կարող են պահպանվել որպես բնական գեղեցկություն:

Հետևաբար, բնակավայրի հատակագիծը կազմելիս այնտեղ պետք է ո-
միայն նախագծվեն բնության գեղեցկություններ, այլև, առաջին հերթին, ան-



digitised by A.R.A.R.@

Հրաժեշտ է պահպանել և օգտագործել նրա տերիտորիայի վրա գտնվող բնու-
թյունը, շրջակա բնանկարը։
Որպես քաղաքի և բնության օրգանական կապի ցայտուն օրինակ կարելի
է նշել Անին։ Բագրատունյաց հոյակապ, այժմ ավեր մայրաքաղաքը, որը Թագի
նման զարդարում է եռանկյունաձև բրգանման հրվանդանը, շրջապատված է
Ախուրյանի, Ծաղկոցաձորի և Գայլաձորի գեղատեսիլ կիրճերով։
Այժմ տեսնենք, թե քաղաքում ինչպես պետք է բաշխված լինեն կանաչ
տարածությունները, ջրային մակերեսները և այլն։ Այդ ամենը օգտագործվում
են ո՛չ միայն էսթետիկական հաճույքի համար. արևը, ջուրը, բուսականությու-
նը կարևորագույն կենսական նշանակություն ունեն, անհրաժեշտ են մարդու
առողջության, երկարակեցության համար։
Շատ կարևոր է այն հանգամանքը, թե դրանք ի՛նչ ձևով կմտնեն քաղաքի
հատակագծի մեջ, ի՛նչ դիրք կգրավեն։ Քաղաքների հատակագիծը կազմելիս
ամենից առաջ պետք է հաշվի առնել տեղի կլիմայական պայմանները, քանի
որ այն, ինչ լավ է, ասենք, հյուսիսում, կարող է նույնը չլինել հարավում։
Օրինակ, հյուսիսում տարածված է ձմեռային սպորտը, իսկ հարավում՝ ջրային,
որի համար հարավում ջրային մակերեսների ավելի մեծ պահանջ է զգաց-
վում։
Օրինակ, եթե արևելյան բոլոր ժողովուրդների մոտ ջրավազանը, թե՛ ամե-
նաաղքատ խրճիթի և թե հոյաշեն պալատների անբաժանելի մասն է, ապա
հյուսիսում դա անիմաստ ավելորդություն կլիներ։ Երևանի համար, ելնելով նրա
բնական կլիմայական պայմաններից, իհարկե, ավելի հրամայական պահանջ է,
ասենք, ստվերախիտ կանաչազարդումը և մասսայական ջրային սպորտի հնա-
րավորությունների ստեղծումը, ինչպիսին է Հրազդանի վրա (Կիրովի անվան
գործարանի երրորդ մասի մոտ) նախատեսված «Երևանյան ծովի» կառուցու-
մը, որտեղ հնարավոր կլինի ունենալ մասսայական լողարան և «ծովափ», թիա-
վարության և ջրային սպորտի այլ հարմարություններ, ինչպես նաև ամեն մի
բնակելի թաղամասում բացօթյա և ձմեռային լողավազաններ։
Լենինականում, կլիմայական այլ պայմաններում, ջրային սպորտի հնա-
րավորությունների հետ մեկտեղ, ավելի կարևոր անհրաժեշտություն են չմշկե-
լու հրապարակներն ամեն մի բակում և դահուկային սպորտի համար անհրա-
ժեշտ դաշտերն ու հարմարությունները այգիներում և քաղաքի շուրջը։
Անշուշտ փոքր քաղաքները ժամանակակից պայմաններում ունեն շատ
առավելություններ. ուստի նոր քաղաքները պետք է նախագծել այն հաշվով,
որ նրանք ունենան մինչև 100 հազար բնակիչ, բայց 30—50 հազարից ոչ պա-
կաս. այդպիսի քաղաքում հնարավոր է ունենալ բոլոր տեսակի հասարակական
շենքերի կոմպլեքս։ Քաղաքի բնակչության թիվը ցանկալի է, որ չանցնի
200—300 հազարից. հակառակ դեպքում քաղաքը սկսում է մասնատվել, դըժ-
վարանում է բարեկարգումը, տրանսպորտի կազմակերպումը, մատակարարու-
մը, թանկանում է շինարարությունը։
Սակայն կարևորը ո՛չ միայն քաղաքի մեծությունն է, այլ քաղաքի ամբողջ
կառուցվածքը, նրա մասերի ճիշտ կազմակերպումը։
Օրինակ. քաղաքի և բնության կապի խնդրի հաջող լուծումը բոլորովին էլ
պայմանավորված չէ մեծությամբ։
Մի՞թե քաղաքի մեծությունն է պատճառը, որ Երևանում ստիպված ենք մի
քանի զ գեղեցիկ տեսարաններ ստեղծել։ Դրա կարիքը երբեք չէր լինի, եթե, օրի-



նակ, Լենինի հրապարակի հատակագիծն այնպես կազմված լիներ, որ առանց
արգելքների երևար Մասիսը և այլն։ Օրինակ, Պոմպեյում Վեզուվը կենտրոնա-
կան ֆորումից (հրապարակից) տեսանելի դարձնելու համար հրապարակի եր-
կար առանցքն ուղղված է դեպի սարը։
Լենինգրադում Նևա գետը քաղաքի հատակագծի ամբողջ կոմպոզիցիայի
հիմքն է, առանցքը, նրա կազմակերպող ֆակտորը. դրա շնորհիվ էլ քաղաքը և
գետը ընկալվում են միաձույլ, ամբողջական։
Բոլորին հայտնի է, թե որքան գեղեցիկ բնության գրկում է կառուցված Դի-
լիջանը, սակայն անցնելով հին Դիլիջանի գլխավոր փողոցով (Մյասնիկյանի
անվան), որը ներկայացնում է մի միջանցք՝ երկու կողմից պատված շենքերով,
ոչ ոք չի զգում ոչ Աղստեֆ գետի հովիտը, ոչ էլ անտառապատ լանջերը։ Մինչ-
դեռ հյուրանոցի մոտ՝ նույն փողոցում ազատ կառուցապատման շնորհիվ դրու-
թյունը այլ է։
Քաղաքի և բնության կապը պետք է լինի այնքան սերտ, օրգանական, որ
նրանք մի ամբողջություն կազմեն, լրացնեն իրար, լինեն անանջատելի։ Ան-
հնարին է բոլոր դեպքերի համար ընդունելի կոնկրետ լուծումներ տալ։
Սակայն կարելի է անել մի քանի ընդհանուր առաջարկություններ։
Հանգստի և սպորտի համար անհրաժեշտ միջոցները (կանաչազարդում,
ջրային մակերեսներ և այլն) բնակավայրերում ցանկալի է բաշխել համաչափ,
նրա բոլոր մասերում։ Բնակավայրի ամեն մի միավոր, թաղամաս, շրջան, պետք
է կանաչազարդվի, ունենա ջրավազաններ և դրանք պետք է համապատասխա-
նեցվեն նրա մասշտաբին։ Անհրաժեշտ է քաղաքում դրանք դասավորել որոշ
սիստեմով, որը պետք է բխի քաղաքի հատակագծից։
Վերջին ժամանակներս, որպես պրոգրեսիվ հատակագծման սկզբունք,
քաղաքաշինարարության մեջ լայնորեն կիրառվում է, այսպես կոչված, ազատ
հատակագծման սկզբունքը, որը կոչվում է նաև «գեղանկարչական (живо-
писный принцип планировки)։ Այդ սկզբունքը ոմանք համարում են քա-
մա ընտրված ձև, որը կիրառվում է բարդ ռելիեֆի պայմաններում, երբ հնա-
րավոր չէ կիրառել կանոնավոր, գեոմետրիկ (регулярная планировка)
հատակագիծը։ Ոմանք այն համարում են անկանոն, անսիստեմ մի սկզբունք,
որը չունի ոչ մի օրինաչափություն և կախված է նախագծողի քմահաճույքից։
Ոմանք էլ այդ սիստեմը համարում են ֆորմալիստական, մոդայական երևույթ
և դեմ են դրա կիրառմանը։
Անտարակույս ազատ հատակագծումը հեշտացնում է նախագծումը բարդ
ռելիեֆի դեպքում, որտեղ հնարավոր չի լինում գեոմետրիկ հատակագծում իրա-
կանացնել, սակայն այն կարելի է կիրառել նաև բոլորովին հարթ տեղանքի
վրա, որովհետև այն ո՛չ միայն տեղանքին հարմարվելու ճկուն միջոց է, այլև
ուրույն կոմպոզիցիոն սկզբունք։
Պարզամտություն կլիներ ամեն մի անկանոն հատակագիծ դասել ազատ
հատակագծերի շարքը։ Այսպես, օրինակ, երբեմն մեր գյուղերի շատ պատահա-
կան, անկանոն հատակագծեր համարվել են ժողովրդական ստեղծագործության
բարձր նմուշ, լավագույն ազատ հատակագիծ։ Սակայն դրանք պարզապես բնա-
կավայրի անկանոն հատկագծեր են և անկարողության արդյունք, դրանք որևէ
սկզբունքի դասելը կլիներ մեր ժողովրդական ստեղծագործության ժառանգու-
թյան օգտագործման շատ պրիմիտիվ ձև։ Անշուշտ, հայկական հին բնակավայ-
րերում, պատմական հուշարձանների կոմպլեքսներում կան ազատ հատակա-



digitised by A.R.A.R.@

գծման սկզբունքով, գեղարվեստական բարձր մակարդակով կատարված օրինակներ[1] և, թերևս, իրոք Հայաստանում միշտ բարդ տեղանքի հետ գործ ունենալու հանգամանքը խթան է հանդիսացել ազատ հատակագծման զարգացման։

Հաճախ ազատ հատակագծի անվան տակ արվում են և ֆորմալիստական նախագծեր, հատկապես արտասահմանում։ Այդ ունի մոդայական բնույթ և, դժբախտաբար, երբեմն սողոսկում է և մեր պրակտիկայի մեջ. ոմանք, չհասկանալով սկզբունքի իմաստը, ընդօրինակում են նրա արտաքին ձևերը միայն։ Այդպիսի փորձերը պետք է անխնա մերկացնել որպես ամենավնասակար, բացասական երևույթ, որովհետև ազատ հատակագծման հիմքում դրված են ոչ այնքան ձևական, որքան ֆունկցիոնալ պահանջների ճիշտ դրսևորման խնդիրները։

Որո՞նք են ազատ հատակագծման սկզբունքի առավելությունները։ Հատակագծման պրոցեսում ճարտարապետը ստիպված է լինում հաշվի առնել բազմաթիվ կոմպոնենտներ, ինչպես՝ տեղանքի ռելիեֆը, կլիման (քամիները, ջերմության տվյալները և այլն), տնտեսական, տեխնիկական, սանիտարական և այլ կարևոր հանգամանքներ, որոնք մեծ մասամբ հակասող պահանջներ են ներկայացնում նախագծողին։ Այդպիսի պայմաններում ազատ հատակագծումը անհամեմատ ավելի ճկուն սիստեմ է, քան կանոնավորը, գեոմետրիկը, բայց հենց այդ պատճառով այն ավելի բարդ է, որովհետև անթիվ տարբերակների օգտագործման հնարավորություն է ստեղծում. Նրա կիրառումը ավելի մեծ ստեղծագործական ջանքեր ու վարպետություն է պահանջում։ Այս դեպքում կարելի է հատակագիծը ավելի սերտորեն կապել տեղանքի հետ, վեր հանել նրա բնական յուրահատկությունները ու առավելությունները։ Այն մեղմացնում է «արհեստականությունը», ավելի մոտեցնում նրան բնականին։

Երևանում, Հրազդանի գեղատեսիլ աջ ափին (Շահումյանի ավան), որտեղից տեսարաններ են բացվում դեպի Հրազդանի ձորը, Մասիսը, Արագածը, Դալմայի այգիները, վերջին երկու-երեք տարիներում կառուցվել է մի ամբողջ բնակելի թաղամաս, որտեղ բնակելի տիպային տների հետ մեկտեղ կառուցվում են դպրոցներ, մանկապարտեզ-մանկամսուր և պետք է կառուցվեն ըստ նախագծի խանութներ և կուլտուր-կենցաղային սպասարկման այլ շենքեր (սակայն վերջինների կառուցումը ինչ-ինչ պատճառներով ետ է մնում բնակելի տների շինարարությունից)։ Կառուցապատումն այստեղ կատարվում է միկրոռայոնների սկզբունքով, այսինքն՝ ամեն մի բնակելի թաղամասում բնակիչների համար բոլոր անհրաժեշտ սպասարկման պայմաններ ստեղծելով և «ազատ» կառուցապատմանը նման սիստեմով, որտեղ շենքերը դասավորվում են ոչ թե փողոցները «ձևավորելու» համար, այլ ամենից առաջ ապահովելով շենքերի նպատակահարմար դասավորությունը աշխարհի կողմերի, ռելիեֆի և շուրջը բացվող տեսարանների նկատմամբ։ Թե՛ կառուցապատման որոշ թերությունների և թե սպասարկման բազմաթիվ շենքերի ու բարեկարգման միջոցառումների բացակայության, ինչպես նաև տիպային շենքերի զգալի թերությունների պատճառով թաղամասն առայժմ անհրապույր և թերի տեսք ունի։ Իսկ ամենից շատ այդ զգացվում է կանաչի բացակայության պատճառով։ Մինչև այժմ ամբողջ թաղամասի տերիտորիայի վրա, որտեղ արդեն մի քանի տարի է ապրում են

[1] Օրինակները նկարագրված են Վ. Հարությունյանի, Ս. Մնացականյանի, Յ. Ղալփախչյանի և ուրիշների աշխատություններում։



հազարավոր մարդիկ, երեխաներ, չկա մի ծառ, մի ծաղկանոց, մի ջրավազան, չկա «բնություն»։

Եթե համեմատելու լինենք այս թաղամասը Մոսկվայի Չերյոմուշկի թաղամասի հետ (հաճախ այդպես են անվանում այն), կտեսնենք, որ կառուցապատման սկզբունքն այնտեղ նույնն է, բնակելի շենքերը նույնքան պարզ, հասարակ հարդարանք ունեն, երեսապատված չեն տուֆով։ Սակայն այնտեղ թաղամասը խիստ հրապուրիչ է, բակերի ամբողջ ազատ տարածությունները զբաղեցված են ծառերով, ծաղկող թփուտներով, ծաղկանոցներով, տեղ-տեղ թողնված են սպորտի և խաղերի հրապարակներ, լողավազաններ, զանազան հարմարանքներ երեխաների խաղալու համար, թեթև տաղավարներ հանգստանալու համար, նստարաններ ծառերի ստվերում և այլն, որոնք չնչին ծախսեր են պահանջում, բայց մեծ հարմարություններ են ստեղծում։ Բնակելի շենքերի շքամուտքերը, որոնք բակի կողմից են, զարդարված են մագլցող կանաչով, ծաղկող թփուտներով ու ծաղիկներով՝ թեթև բետոնյա կառուցվածքների վրա։ Այսպիսի հասարակ և հիմնականում «բնության» միջոցով այդ թաղամասը ստացել է հաճելի տեսք։

Ազատ հատակագծման սկզբունքի առավելություններն ավելի լավ կարելի է ցույց տալ այգեշինարարության օրինակով։

Այգեշինարարության մեջ կան հատակագծման երկու հիմնական ոճային սիստեմներ՝ ռեգուլյար, կանոնավոր, որը կոչվում է նաև «ֆրանսիական» և երկրորդը՝ «պեյզաժային» կամ անգլիական (ոչ ճիշտ, բայց ընդունված տերմիններ)։ Ռեգուլյար այգու ցայտուն օրինակ են Վերսալի այգին կամ մեզ ավելի ծանոթ Պետերգոֆը՝ Լենինգրադի մոտ։

Սրանց համար բնորոշ է մի գլխավոր և նրան ենթակա առանցքային հատակագիծ, սիմետրիկ դասավորությամբ ուղղագիծ ծառուղիներ, հաճախ խուզված ծառերով, կանոնավոր հրապարակներ, ջրավազաններ, հարուստ ձևավորված բազմաթիվ շատրվաններ, քանդակներ և շքեղ շենքեր՝ դասավորված գլխավոր ծառուղիների առանցքներով, ուր ամենուրեք զգացվում է մարդու շինարար ձեռքը, նրա կամքը։

Աշխարհի «պեյզաժային» այգու ամենալավ նմուշներից են՝ Պավլովսկի պարկը՝ Լենինգրադի մոտ, կամ Սոֆիևկա պարկը՝ Կիևի շրջակայքում։ Այստեղ շենքերը դասավորված են ազատ, ջրային մակերեսները բնական լճերի ձև ունեն, ծառուղիները ազատ ձգվում են լճի անկանոն ափերով, լայկան ուռենիների կողքով, անհետանում ծառերի խիտ զանգվածում, անցնում լուսավոր բացատներով, մենավոր ծառերի կամ ծառախմբերի մոտով, ոլորապտույտ գետակի ափով, որի վրա կառուցված է գյուղական փայտե պարզ մի կամրջակ և այլն։ Թվում է, թե ամեն ինչ «ինքն իրեն» է ստեղծվել, առանց մարդու մասնակցության։

Առերևույթ թվում է, թե որքան դժվար է առաջին ձևի այգիների ստեղծումը, նույնքան հեշտ է վերջինի կառուցումը։ Պարզամտություն կլինի այդպես կարծել։ Իհարկե, բնության մեջ լինում են առանձին տեղեր, որոնք իրենց բնական գեղեցկությամբ գերազանցում են մարդկանց ստեղծած ամեն մի պեյզաժին, սակայն ցանկացած տեղում «բնական» ձևեր ունեցող այգի ստեղծելու համար անհրաժեշտ է շատ մեծ վարպետություն։ Պավլովսկի պարկի կառուցման վրա տարիներ շարունակ աշխատել են այնպիսի խոշոր արվեստագետներ, ինչպիսիք են՝ Կամերոնը, Գոնզագոն և ուրիշներ. այդ է պատճառը, որ նրա «բնական»



digitised by A.R.A.R.@

ամենապարզ տեսարաններից մեկը երբեմն ավելի արտահայտիչ է, քան Պետերգոֆի ամենաշքեղ տեսարանը։

Երևանի կանաչապատված լանջերը, շատ այգիներ ու պուրակներ (Կոմսոմոլի այգին, օպերայի, Ղուկաս Ղուկասյանի, Կիրովի անվան և այլն) ստեղծվել են պեյզաժային այգիների սկզբունքով։ Այս այգիներում զանազան տեսակների ծառերը, թփուտները, ծաղիկները դասավորված են ազատ, տարբեր խմբավորումներով, բայց հաշվի են առնվել նրանց ձևերը, գույները, ծաղկման ժամանակաշրջանը, գույների ներդաշնակությունը և այլն։ Կանաչազարդման այս ձևը ավելի մոտ է «բնականին» և ավելի գերադասելի։ Եթե այգու ամբողջ մի հատվածում տնկված լինեն միայն լական ուռիներ, ապա անհետաքրքիր, տաղտկալի կլինի, իսկ երբ կռացած ճյուղերի կողքին խրոխտ վեր են բարձրանում բարդիները, մի փոքր այն կողմ սոճիների կապտավուն կանաչն է, ծաղկած թփուտներ, ծաղիկների խայտաբղետ գորգ (ինչպես դա շատ վարպետորեն արված է ՀԿՊ Կենտկոմի շենքի բակի այգում), ապա նրանք լրացնում են միմյանց, հակադրությունների միջոցով ստեղծում բարդ, բայց հաճելի ներդաշնակություն։

Վերջին ժամանակներս Երևանում (և առհասարակ Սովետական Միությունում) վերացվում են այգիների, պուրակների ցանկապատերը, դարպասները, հանդիսավոր մուտքերը, որոնց վրա առաջներում հսկայական ավելորդ ծախսեր էին կատարվում և որոնք պարզապես «ճարտարապետական ավելորդաբանություններ» էին։ Սակայն խնդիրը միայն ավելորդ ծախսերի մեջ չէ։ Ցանկապատերը, դարպասները (առաջներում հաճախ նաև դրանց կողքերի առյուծների քանդակները), մասնավոր սեփականատիրական մտայնության, անհատի կաշկանդման, նրա իրավունքների սահմանափակման արտահայտություն էին, որը մենք ժառանգել էինք հնից։ Ցանկապատման սկզբունքը բնորոշ է նաև կանոնավոր այգիներին, որտեղ այգին որոշակի սկիզբ և վերջ ունի, ձևավորված համապատասխան ձևերով և ցանկապատերով։ Հակառակ դրան, պեյզաժային այգիների ոճային առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ նրանք չպետք է ունենան ամրապնդված սահմաններ, այլ աննկատելի անցնեն, միաձուլվեն շրջապատի բնության հետ, դառնալով ավելի հարազատ շրջապատին, նրա հետ կազմելով մի ամբողջություն։ Ահա այդ տեսակետից ցանկապատերի և դարպասների վերացումը նպաստում է քաղաքի ճարտարապետական պեյզաժի պատկերների ամբողջությանը, դառնում միասնության և դեմոկրատիզմի սկզբունքների արտահայտություն։

Այս ամենից կարելի է գալ հետևյալ եզրակացության, որ, եթե ազատ հատակագծումը բնակավայրերի նախագծման և պեյզաժայինը այգեշինարարության մեջ ունեն այդքան առավելություններ, ուրեմն պետք է դրանք կիրառել ամենուրեք և միշտ։ Սակայն սխալ կլինի այդպես մտածել։

Մարդու կյանքն ունի անհատական, ինտիմ և հասարակական կողմ։ Բնակարանում ընթանում է անհատական կյանքը և այն պետք է լինի ինտիմ, բայց ունի արդեն որոշ հասարակական ֆունկցիա. փողոցում, հրապարակում, հասարակական շենքերում մարդն ապրում է ուրիշների հետ համատեղ և չի կարելի ամեն ինչ դասավորել այնպես, ինչպես բնակարանում։ Որքան փողոցները ոլորապտույտ լինեն և հրապարակները տձև, այնքան դժվար կլինի այնտեղ կազմակերպել տրանսպորտի շարժումը. իսկ բնակելի փողոցները, կամ նրբանցքները պարտադիր չէ, որ լինեն կանոնավոր, սիմետրիկ։



Օրինակ, եթե նույնիսկ 10 հազար տեղանոց ստադիոնը տանող ծառուղիները, ծաղկանոցները դասավորված լինեն անկանոն, ճանապարհները՝ ոլորապտույտ, ապա հենց առաջին մրցության օրը բոլոր ծաղկանոցներն ու կանաչը կտրորվեն։ Իսկ եթե զբոսայգում միայն երկար, ուղղաձիգ ծառուղիներ լինեն, ապա հանգստանալու փոխարեն դրանք կձանձրացնեն մարդուն։

Մեծ քաղաքը պետք է ունենա կազմակերպված, ընդհանուր կառուցվածքը ազատ, բնական հատակագիծը պետք է օգտագործել քաղաքի առանձին մասերի, միկրոշրջանների, հանգստի վայրերի համար։ Եթե բնականը գեղեցիկ է իր ինտիմությամբ, անմիջականությամբ, մեղմ գծագրությամբ, ապա ուրբանիստականը՝ իր կազմակերպվածությամբ, հատուկ, որոշակի գծերով, լակոնիզմով. մեկը լրացնում է մյուսին, ուժեղացնում նրա արտահայտչականությունը։

Սովետական քաղաքաշինարարական արվեստը ընդունում է մեծ քաղաքի ուրբանիստական գեղեցկությունը և բնության անհրաժեշտությունն ամեն մի բնակավայրում, չհակադրելով քաղաքաշինարարական այդ երկու սկզբունքները։

Մարդը սիրում է մենակ մնալ, թափառել արահետով, մենանալ անտառի խորքում, թաղվել խոտերի, ծաղիկների մեջ, հանձնվել իր մտքերին։ Այդ նույն մարդը սիրում է և սրընթաց անցնել ավտոմեքենայով մայրաքաղաքի լայն, մարդաշատ պողոտաներով, շնչել բազմահազար ամբոխի հետ, ձուլվել կոլեկտիվին, զգալ իրեն իբրև նրա անբաժան մասնիկը…

Պոետները երգել և երգում են բնությունը, պոետները երգել և մերթ նզովել են քաղաքները, բայց կերգեն ու կփառաբանեն նոր, լուսավոր, հարմարավետ սովետական գեղեցիկ քաղաքները, ուր ամեն ինչ արվում է մարդու համար, նրա երջանկության կատարելության համար։




digitised by A.R.A.R.@

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԳՈՐԾՈՆԸ

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում գաղափարական աշխատանքը գնալով ավելի հզոր գործոն է դառնում. այն մեր օրերում պարտիական կազմակերպությունների պրակտիկ գործունեության հաջողության վճռական պայմանն է:

Գաղափարական աշխատանքը կոչված է նպաստելու մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության, նրանց կոմունիստական գիտակցականության բարձրացմանը: Որպեսզի իրականանան կոմունիստական շինարարության՝ պարտիայի մշակած հոյակապ կանխագծումները, հարկ է, որ մեր մարդիկ աշխատեն պարտքի բարձր գիտակցությամբ, ներքին բուռն մղումով, խանդավառությամբ:

«Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագ ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները»:

Աշխատավորական մասսաների վրա պարտիայի ներգործման կարևորագույն լծակներից է քաղաքական-մասսայական աշխատանքը, որի նպատակն է նրանց լիովին ներգրավել տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների լուծման գործում:

ՍՄԿՊ XXII համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում նկատելիորեն բարելավվել է քաղաքական-մասսայական աշխատանքի դրվածքը: Այժմ այն ավելի սերտորեն է առնչվում կյանքի, պարտիայի ու ժողովրդի պրակտիկ գործունեության հետ և կիրառվում են ներգործման նոր, ավելի բազմազան ու ճկուն ձևեր, մեթոդներ: Ռեսպուբլիկայի գործարաններում, կառույցներում, հանրային դաշտերում և բնակավայրերում ավելի քան երեսուներկու հազար ագիտատորներ աշխատավորներին սիստեմատիկաբար պարզաբանում են ՍՄԿՊ նոր Ծրագիրը, պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ հարցերը, մոբիլիզացնում նրանց ջանքերը կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Խոշոր գործ են կատարում մամուլը, ռադիոն, կուլտուր-լուսավորական հիմնարկները և այլն:

Վերջերս ՀԿՊ Կենտկոմի բյուրոն քննության առավ ըստ բնակության վայրի բնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի վիճակը Երևանում: Նշվեց, որ մայրաքաղաքի պարտիական կազմակերպություններն այդ ասպարեզում կատարում են դրական նշանակալի գործ, նկատվում է քաղաքական-մասսայական աշխատանքի աշխուժացում: Աշխատավորների համար պարբերաբար կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ, ցուցահանդեսներ, զանազան երեկոներ, հանդիպումներ: Բավականին գործ են կատարում մշտական գործող ագիտպունկտերը, լեկտորիումները, կուլտուրայի տները, գրադարանները:

Միաժամանակ ՀԿՊ Կենտկոմի բյուրոն բացահայտեց այն լուրջ թերությունները, վրիպումները, որոնք գոյություն ունեն այդ բնագավառում: Մայրաքաղաքի բնակիչների մի զգալի մասը դուրս է մնացել պարտիական-քաղաքական ներգործության ոլորտից, չերտավորված աշխատանք չի կազմակերպվում բնակչության տարբեր խավերի շրջանում: Քաղաքական աշխատանքում դեռևս մինչև վերջ չեն վերացված ֆորմալիզմի և դոգմատիզմի տարրերը, լիովին չի հաղթահարված նրա կտրվածությունը կյանքից. միշտ չէ, որ մարտական, հարձակողական պայքար է մղվում հետամնաց տրամադրությունների, բուրժուական հայացքների, խորթ բարքերի դեմ:

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը, հատկապես, անբավարար է կազմակերպված քաղաքի առանձին թաղամասերում (Զարքախ, Ջեյթուն, Կիրզա և այլն): Շատ ագիտպունկտեր գոյություն ունեն ձևականորեն, դրանք չեն դարձել բնակչության շրջանում տարվող քաղաքական աշխատանքի կենտրոններ (օրինակ, Պետական համալսարանի, Պոլիտեխնիկական ինստիտուտի, ավտոպահեստամասերի, № 66 դպրոցին առընթեր կետերը): Պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողները հազվադեպ են լինում կուլտուրայի տներում, գրադարաններում, հանգստի պարկերում, չեն զրուցում այնտեղ հաճախող աշխատավորների հետ:

Կոմունիզմը տարերայնորեն, ինքն իրեն չի հաղթում, այն կարող է կառուցվել ու կկառուցվի աշխատանքով, հասարակության բոլոր անդամների անձնուրաց ջանքերով: Այստեղից էլ բխում է քաղաքական-մասսայական աշխատանքի գլխավոր էությունը՝ մարդկանց համակել աշխատանքի նկատմամբ սիրո և հարգանքի զգացումով, կոմունիստական վերաբերմունք զարգացնել աշխատանքի, հանրային արտադրության նկատմամբ: Հենց դա էլ կազմում է մեր դաստիարակչական աշխատանքի ողն ու ծուծը:

Քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է ակտիվորեն նպաստի տնտեսական շինարարության խնդիրների լուծմանը, բարեբար ներգործություն ունենա արտադրության գործերի, մարդկանց վարքագծի վրա: Այն պետք է օգնի քաղաքի ու գյուղի աշխատավորներին՝ աշխատելու բարձր արտադրողականությամբ, ջանքերի առավել լարումով, առանց ուժն ու եռանդը խնայելու: Ինչ խոսք, որ կոնկրետ, նպատակասլաց քաղաքական աշխատանքը հնարավորություն կընձեռի մարդկանց ավելի լրիվ բացահայտելու իրենց ընդունակությունները, ստեղծագործական նախաձեռնությունը, պրակտիկայում մարմնավորելու իրենց արժեքավոր մտահղացումները:

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքը անհրաժեշտ է օրգանապես կապել կոմունիստական գործունեության հետ: Դիմելով գաղափարական ճակատի աշխատողներին, Վ. Ի. Լենինն ասում էր, որ հարկավոր է ավելի քիչ քաղաքական ճոռոմաբանություն, ավելի քիչ ինտելիգենտական դատողություններ,





digitised by A.R.A.R.@

ավելի շատ ուշադրություն կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից առնված, կյանքում ստուգված փաստերին:

Այնտեղ, որտեղ քաղաքական-մասսայական աշխատանքը տարվում է վերացական կերպով, արտադրության առջև ծառացած կենսական հարցերից կտրված, ուրպես կանոն, գործերի վիճակը անմխիթար է:

1962 թվականի անցած հինգ ամսում Երևան քաղաքի 38 արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես և առանձին շինարարական կազմակերպություններ չկատարեցին պետական պլանները: Վերոհիշյալ ձեռնարկությունների մի մասում պարտիական կազմակերպություններն անց են կացնում բազմաթիվ միջոցառումներ՝ զրույցներ, զեկուցումներ, երեկոներ, ժողովներ, խորհրդակցություններ և այլն: Բայց ստացված արդյունքներն անբավարար են: Նշանակում է այդտեղ կոմունիստները չեն աշխատել ինչպես հարկն է: Մի այլ օրինակ: Շորբուլաղի կոլտնտեսությունը (Շահումյանի շրջան) խիստ ետ է մնում, չեն կատարվում գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի պլանները: Հիմնական պատճառն այն է, որ այստեղ ընկած է աշխատանքային կարգապահությունը, մարդիկ չեն գործադրում իրենց ողջ ուժերը: Մինչդեռ տնտեսության ետ մնալը հաղթահարելու համար ամենից առաջ անհրաժեշտ է բարձրացնել մարդկանց նյութական ու բարոյական շահագրգռվածությունը հանրային գործի նկատմամբ: Հարկավոր է ո՛չ միայն աշխատավորներին համոզելու կարողություն, այլև նրանց գործնականապես կազմակերպելու հմտություն:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոր մարդու ձևավորման ու դաստիարակության գործում մեծ է սոցիալիստական մրցության և, հատկապես, նրա բարձր ձևի՝ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների շարժման նշանակությունը: Քաղաքական-մասսայական աշխատանքը կոչված է նպաստելու մրցության ծավալմանը, քաջալերելու բանվորներին, կոլտնտեսականներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին՝ աշխատելու ավյունով, պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները: Ագիտատորների, պատի թերթերի, ցուցադրական նյութերի միջոցով արտադրական կոլեկտիվների բոլոր անդամներին պետք է մշտապես իրազեկ դարձնել համաժողովրդական պայքարի արդյունքներին: Դա խիստ կարևոր է, քանի որ մրցության մեջ գլխավորը նրա հրապարակայնությունն է:

Սակայն որոշ պարտիական կազմակերպություններ ձևական մոտեցում են հանդես բերում մրցության կազմակերպման գործին, ժամանակին չեն ստուգում ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և հրապարակում մրցության արդյունքները:

Բարոյական հզոր գործոն է լավ օրինակի ուժը: Անհրաժեշտ է մարդկանց դաստիարակել աշխատանքի կոնկրետ, լավագույն օրինակներով, դրանով իսկ օգնել ետ մնացողներին՝ հավասարվելու առաջավորներին, հասնելու ընդհանուր վերելքին: Քաղաքական աշխատանքի կենտրոնում պետք է դնել արտադրության առաջավոր փորձի տարածումը, այդ գործում ներգրավելով ագիտատորներին, մամուլի և հրատարակչության, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողներին, դասախոսներին, մասնագետներին: Առաջավոր փորձի տարածումը պետք է կազմակերպել գործիմացությամբ, այն դնել գիտական հիմքի վրա, որպեսզի մարդիկ ո՛չ միայն լավ ըմբռնեն աշխատանքի առաջավոր մեթոդների տնտեսական արդյունավետությունը և համոզվեն դրանում, այլ, որ



կարևորն է, կարողանան այն ստեղծագործաբար օգտագործել իրենց աշխատանքում, ներդնել արտադրության մեջ:

Նոր մարդու ձևավորումը բարդ ու տևական պրոցես է: Պարտիական կազմակերպությունները պետք է գործադրեն քաղաքական-մասսայական ներգործման բոլոր միջոցները, ձևերն ու մեթոդները սովետական մարդկանց կոմունիզմի իդեալների նկատմամբ անխորտակ հավատով տոգորելու, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության, կոլեկտիվիզմի, ազնվության, հասարակական պարտքի բարձր գիտակցության ոգով դաստիարակելու համար: Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում շարադրված նորմերը աստիճանաբար պետք է դառնան մեր բոլոր աշխատավորների առօրյա վարքագիծը, բարոյական հատկանիշը:

Չպետք է անտեսել, որ մարդկանց զգալի մասի գիտակցության մեջ դեռևս մնում են կապիտալիզմի մնացուկներ, վնասակար նախապաշարմունքներ: Իմպերիալիզմի գաղափարախոսներն ամեն ինչ անում են՝ պահպանելու և աշխուժացնելու բուրժուական բարքերն ու նախապաշարմունքները մեր մարդկանց, մասնավորապես երիտասարդների գիտակցության մեջ, փորձում են թունավորել նրանց մտքերը:

Ահա թե ինչու անհրաժեշտ է, որ քաղաքական-մասսայական աշխատանքն իր սուր ծայրով ուղղված լինի այն քաղաքացիների դեմ, ովքեր ոչինչ չտալով հասարակությանը, ուզում են ապրել նրա հաշվին, այն մարդկանց, ովքեր չեն ապրում արդար վաստակով, խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, դրսևորում մասնավոր-սեփականատիրական տենդենցներ, անհատապաշտություն: Նրանց շուրջ պետք է ստեղծվի անհանդուրժողականության մթնոլորտ: Խիստ անհրաժեշտ է ուժեղացնել սնոտիապաշտության ու կրոնական նախապաշարմունքների դեմ մղվող պայքարը, գիտա-աթեիստական լուրջ աշխատանք կատարել հավատացյալների շրջանում, համբերատարությամբ պարզաբանել կրոնական դոգմաների սնանկությունը և օգնել նրանց՝ արագորեն թոթափելու կրոնական նախապաշարմունքները:

Հարկավոր է գաղափարական հարձակողական սուր պայքար վարել թշնամական բուրժուական ազդեցության դեմ, մերկացնել կապիտալիզմի հակաժողովրդական, ռեակցիոն էությունը և կապիտալիստական իրավակարգը գունազարդելու բոլոր փորձերը:

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքն առանձնապես պետք է ուժեղացվի երիտասարդության շրջանում: Երբեմն առանձին անկայուն երիտասարդներ, ընկնելով բուրժուական գաղափարախոսության ազդեցության տակ, հրապուրվում են արտասահմանյան ամեն մի փայլուն, բարոյալքվում, շվայտ ու դատարկապորտ կյանք վարում, անգամ դիմում մեր հասարակության, մեր փառապանծ երիտասարդության համար միանգամայն խորթ, անցանկալի քայլերի:

Մեկ ամիս առաջ Երևանում և ռեսպուբլիկայի որոշ շրջաններում առանձին քաղաքացիներ, ընկնելով ինչ-որ շարամիտ անձանց զրպարտիչ լուրերի ազդեցության տակ, խուճապի մատնվեցին և սկսեցին իրենց ավանդները հանել խնայողական դրամարկղներից: Դա վկայում է մեր գաղափարական, ինչպես և քաղաքական-մասսայական աշխատանքի թերացումների մասին, այն մասին, որ պարտիական ամենօրյա ներգործությունից դեռևս դուրս են մնում բնակչության որոշ խմբեր:



digitised by A.R.A.R.@

Որպեսզի քաղաքական-մասսայական աշխատանքը դառնա կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի ստեղծման և նոր մարդու ձևավորման ակտիվ գործոն, անհրաժեշտ է բարձրացնել ձեռնարկվող միջոցառումների գաղափարական մակարդակը՝ աշխատանքը դնել գործնական հողի վրա, հաշվի առնելով աշխատավորների հոգևոր ու կենսական պահանջմունքները, ցանկությունները, կարողանալ հմտորեն ներազդել նրանց խոհերի ու զգացումների վրա: Չի կարելի դաստիարակել մարդուն ընդհանուր կոչերով, փքուն ֆրազներով և գործին տալ սոսկ լուսավորչական բնույթ. քաղաքական աշխատանքը պետք է լինի կոնկրետ, կրքոտ ու համոզիչ, այն պետք է մարդկանց հոգում ծնի ազնիվ ձգտումներ, համակի այն ամենով, ինչ լավագույնն է և նրանց մղի նորարարության, աշխատանքային սխրանքների:

Մեր աշխատանքում կան բազմաթիվ թերություններ, սխալներ, առաջընթացի դժվարություններ: Ագիտատորը, կոմունիստը պարտավոր են ժամանակին իրազեկ լինել այդ ամենին, օգնել դրանց վերացմանը, ճշմարտացի, առանց քաշվելու հստակ ու սպառիչ պատասխաններ տալ աշխատավորներին հուզող, մտատանջող հարցերին: Նորակառույց թաղամասում՝ Հրազդանի աջ ափին բնակվում է 18 հազար մարդ. չնայած ստացված բազում բողոքներին, այնուամենայնիվ, վատ է կազմակերպված բնակիչների կուլտուր-կենցաղային սպասարկումը՝ չկա գրադարան, ակումբ, կինոթատրոն, բաղնիք և այլն: Իսկ այդ հանգամանքը առաջ է բերում արդարացի դժգոհություն:

Վ. Ի. Լենինը կոմունիստներից պահանջում էր, որ նրանք «ապրեն բանվորական կյանքի խորքում, ճանաչեն նրան ամեն կողմից, ամեն մի հարցում, ամեն մի րոպե կարողանան անսխալ որոշել մասսայի տրամադրությունը, նրա իսկական ձգտումները, կարիքները, մտքերը, առանց կեղծ իդեալականացման որևէ նշույլի կարողանան որոշել նրա գիտակցության աստիճանը և անցյալի այս կամ այն նախապաշարմունքի ու մնացորդի ազդեցության ուժը, կարողանան նվաճել մասսայի անսահման վստահությունը՝ ընկերական վերաբերմունք ցուցաբերելով դեպի նա, նրա կարիքները հոգատարությամբ բավարարելով» (Երկեր, հատ. 33, էջ 221):

Լենինյան այդ պահանջը պետք է դառնա մեր բոլոր ագիտատորների, պրոպագանդիստների, դասախոսների, պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողների գործունեության ելակետը:

Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են ավելի ընդլայնել քաղաքական-մասսայական աշխատանքի շրջանակները: Գործն այնպես վարել, որ պարտիայի խոսքը մատչելի լինի բոլորին և ոչ ոք դուրս չմնա գաղափարական ներգործության ոլորտից: Քաղաքական արդյունավետ աշխատանք պետք է ծավալել, մանավանդ բնակչության մեջ ըստ բնակության վայրի, հանրակացարաններում, հասարակական վայրերում, կուլտուր-լուսավորական հիմնարկներում և այլուր:

Անհրաժեշտ է գտնել մասսայական աշխատանքի ավելի ճկուն ու մատչելի ձևեր ու միջոցներ, հրաժարվել շաբլոնից, ստանդարտից, մեռած ու քարացած այն ձևերից, որոնք չեն տալիս ցանկալի արդյունք: Իրենց լավ են արդարացնում, օրինակ, հարց ու պատասխանի թեմատիկ երեկոները, հանդիպումները, ցուցահանդեսները, լավ ձևավորված ցուցադրական նյութերը: Եվ ինչո՞ւ տրադիցիա չդարձնել ծաղկի, երգի, բերքի տոները, «ոսկե ձեռքերի» և գեղեցկության մրցանակաբաշխությունները, ինչո՞ւ հաճախ չկազմակերպել հետաքրքրական



էքսկուրսիաներ, արշավներ, ստուգատեսներ: Հարկավոր է մտածել քաղաքների, գյուղերի և ավանների փողոցներում, հրապարակներում, զբոսայգիներում ցուցադրական ագիտացիա կազմակերպելու մասին, բարելավել կուլտուր-լուսավորական հիմնարկների, գեղարվեստական ինքնագործունեության և սպորտային խմբակների գործունեությունը, խելամտորեն զբաղվել աշխատավորների և, մանավանդ, երիտասարդների հանգստի ու ժամանցի կազմակերպմամբ:

Անհրաժեշտ է, որ մամուլի բոլոր օրգանները, ռադիոն ու հեռուստատեսությունը սիստեմատիկ և խոր կերպով պրոպագանդեն լավագույն կինոնկարները ու հիմնավոր ռեցենզիաներով օգնեն դիտողներին ճիշտ կողմնորոշվելու: Ինչո՞ւ լավագույն մանկավարժների, հոգեբանների և իրավաբանների օգնությամբ, պարբերաբար աշխատավորական լայն խավերին չլուսաբանել դաստիարակչական նշանակություն ունեցող դատական պրոցեսները: Փոխանակ Մաշտոցի չեղյալ սիրային վարկածը ցուցադրելու ու նրա կերպարը խեղաթյուրելու, հեռուստատեսությունը օգտակար գործ արած կլիներ, եթե իր դիտողներին ցուցադրեր հերոս օդաչուի սխրագործությունը հայրենիքը լքող ստորաքարշների դեմ մղած անհավասար կռվում և նրանց դատավարությունը:

Գրքերի սիստեմատիկ գրախոսությունը մամուլի ու ռադիոյի միջոցով մեծապես կօգնի ընթերցողներին՝ ջոկելու լավը վատից, զերծ մնալու հին աշխարհի էգոիզմից և այլ արատներից:

Գյուղի կոմունիստների առաջնահերթ պարտքն է՝ շարունակել ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ մսի ու յուղի գների բարձրացման մասին ընդունած որոշման լայն պարզաբանումը, գլխավորել գյուղատնտեսության աշխատողների խանդավառությունը և արտադրության խելացի կազմակերպմամբ ապահովել անասնաբուծական մթերքների իրական առատություն:

Ամենուր դեռևս անբավարար է ղեկավար ընկերների սիստեմատիկ մասնակցությունը մասսաների քաղաքական դաստիարակության գործին: ՍՍՌՄ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետների, քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների դեպուտատներ, ՀԿՊ քաղկոմների ու շրջկոմների անդամ-թեկնածուներ, ռեսպուբլիկայի հիմնարկների պետեր ու տեղակալներ՝ ահա քաղաքական-մասսայական աշխատողների մի մեծ բանակ, որը, եթե ճիշտ օգտագործվի, արդյունքը նշանակալի կլինի: Քաղաքական դաստիարակչական այս հսկայի ռեզերվի վրա պետք է մեծ ուշադրություն դարձնել:

Պարտիայի քաղկոմ-շրջկոմները, արտադրական տերիտորիալ վարչություններին առընթեր ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչները պետք է վճռականորեն բարելավեն ղեկավարությունը քաղաքական-մասսայական աշխատանքների նկատմամբ. օգնեն սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ ընդլայնելու քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ոլորտը, բարձրացնեն անցկացվող միջոցառումների արդյունավետությունը, գաղափարական ներգործությունը:

---

digitised by A.R.A.R.@

# ԱՎԵԼԱՑՆԵՆՔ ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒՆՔԸ

Ավելի քան մեկ ամիս առաջ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սո-
վետը որոշում ընդունեցին մսի և յուղի գնման գները բարձրացնելու մասին։ Դա
նյութական մեծ աջակցություն է մեր գյուղի աշխատավորներին և նպատակ
ունի խթանելու անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը։

Ինչ խոսք, որ պարտիայի ու կառավարության այդ կարևոր միջոցառումը
հնարավորություն կտա նոր, ավելի խոշոր միջոցներ ներդնելու անասնաբուծու-
թյան ինտենսիվ զարգացման գործում։ Ավելի նպաստավոր պայմաններ կըս-
տեղծվեն ֆերմաների շենքերի կառուցման ու աշխատատար պրոցեսների մե-
քենայացման, կերի կայուն բազայի ապահովման համար, կբարձրանա անաս-
նապահության աշխատողների նյութական շահագրգռվածությունը։ Սակայն,
որպեսզի, օգնությունը ռեալ պտուղներ տա, անհրաժեշտ է գործադրել մեծ ջան-
քեր, խելացի օգտագործել անասնաբուծական մթերքների արտադրությունն ա-
վելացնելու բոլոր ռեզերվները։

Մեր տերիտորիալ-արտադրական վարչության գոտու տնտեսությունները
մշակել են կաթի, մսի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունն
ավելացնելու կոնկրետ պլաններ, դրանք քննարկվել են պարտիական ու կոմե-
րիտական կազմակերպություններում, կոլտնտեսականների ու սովխոզների
բանվորների ժողովներում և հաստատվել կոլտնտեսային-սովխոզային արտա-
դրական վարչության խորհրդում։

1962 թվականին մեր տնտեսությունները պետք է ստանան 30.571 ցենտ-
ներ միս (սպանդանոցային քաշով), 145.917 ցենտներ կաթ, 2011 ցենտներ
բուրդ և 4 միլիոն 514 հազար հատ ձու։

Վերը նշված քանակությամբ անասնաբուծական մթերքներ արտադրելու
համար հարկավոր է ստեղծել կերի կայուն բազա։ Անասնաբուծության շահու-
թաբերության բարձրացման, կաթի ու մսի ինքնարժեքի իջեցման առաջին պայ-
մանը բավարար քանակությամբ և էժան կեր ստանալն է։ Գործի վերաձելով
ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները, մեր վարչության մեջ միա-
վորվող տնտեսությունները գործնական միջոցառումներ են իրականացնում այդ
ուղղությամբ։ Վերանայելով ցանքատարածությունների կառուցվածքը, կոլտըն-
տեսությունները ու սովխոզները ընթացիկ տարում բազմամյա խոտաբույսերի
և մաքուր ցելերի կրճատման հաշվին ցանել են 569 հեկտար հացահատիկ, որի
զգալի մասը օգտագործվելու է որպես կեր։ Աբովյանի և Հրազդանի շրջաննե-
րում, անցյալ տարվա համեմատությամբ, կրկնապատկվել են եգիպտացորենի
ցանքերը. հատիկ և կանաչ կողրեր ստանալու համար ցանված է 1653 հեկտար
եգիպտացորեն. ծրագրված է Աբովյանում կատարել ևս մոտ 105 հեկտար խո-



զանացան։ Բացի այդ, զգալի չափով ավելացել են կերի արմատապտուղների
և սիլոսային հյութալի կուլտուրաների տարածությունները. կերի համար ցան-
ված է 158 հեկտար շաքարի ճակնդեղ, ինչպես և արևածաղիկ, ոլոռն և այլն։
Նախատեսվում է առաջին երկու երեք տարիներին ավելի ընդլայնել լիարժեք ու
էժան կերային կուլտուրաների ցանքատարածությունները, դրանով իսկ ապա-
հովել անասուններն անհրաժեշտ քանակությամբ կերով և խիստ կրճատել կերի
արտադրության վրա կատարվող մեծ ծախսումները։

Սակայն արվածը գործի սկիզբն է միայն։ Անհրաժեշտ է ապահովել կերա-
յին կուլտուրաներից բարձր բերքի ստացումը, արդյունավետ օգտագործել կերի
պաշարները։ Մեր կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասում այժմ լուրջ
ուշադրություն են հատկացնում ցանքերի մշակության ու խնամքի կազմակերպ-
մանը և, հատկապես, դրանց միջշարային մշակությանը։ Մի շարք տնտեսու-
թյուններում (Քաղսի, Ալափարս, Ֆանտան և այլն) եգիպտացորենի միջշարա-
յին տարածություններն առաջին անգամ մշակում են մեքենաներով։ Միջոցա-
ռումներ են իրականացվում բնական խոտհարքների ու մարգագետինների բա-
րելավման, հանրային հոտի արոտային արածեցումը լավ կազմակերպելու ուղ-
ղությամբ։ Մեր կոլտնտեսականները և սովխոզների բանվորները այժմյանից
ջանքեր են գործադրում անասուններին մեկ ու կես տարվա կերի պաշարով ա-
պահովելու համար։

Առաջավոր տնտեսությունների օրինակը ցույց է տալիս, որ անհրաժեշտ
քանակությամբ էժան ու հյութալի կեր ունենալով կարելի է արտադրել շատ և
էժան անասնաբուծական մթերքներ։ Աբովյանի շրջանի Նլլովանի կոլտնտեսու-
թյունում կովերին տրվում է սննդարար, սպիտակուցներով հարուստ կեր, որի
մեջ զգալի տեղ են գրավում եգիպտացորենից պատրաստված սիլոսը, ճակըն-
դեղը։ Հոգատար խնամքի ու լավ կերակրելու շնորհիվ անասնապահներին հա-
ջողվեց 1961 թվականին յուրաքանչյուր կովից ստանալ 2300 կիլոգրամ կաթ.
ընթացիկ տարվա հինգ ամսում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի հա-
մեմատությամբ, ամեն մի կովի կաթնատվությունը ավելացել է հարյուր կիլո-
գրամով։ Այստեղ ամեն մի կիլոգրամ մսի ինքնարժեքը իջել է 22 կոպեկով։

Մեր մասնագետները միջոցառումներ են մշակել թե ինչ կերպ ու ինչպիսի
կերաբաժիններով կարելի է ստանալ շատ ու ամենաէժան անասնապահական
մթերքներ, կազմել են տնտեսապես հիմնավորված կերաբաժիններ, շահավետ
նորմաներ և այլն։ Միաժամանակ կերային կուլտուրաների բարձր բերք ստա-
նալու նպատակով աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրաց-
նելու համար մշակվել և տեղերում կիրառվում են լրացուցիչ վարձատրության
արդյունավետ ձևեր։ Օրինակ, եգիպտացորենի հատիկ ստանալու նպատակով
նախատեսված ցանքի ու բերքատվության պլանը կատարելու դեպքում կոլտըն-
տեսության բրիգադայի (օղակի) անդամներին տրվում է արտադրված եգիպտա-
ցորենի արժեքի 1—2, գերակատարման դեպքում՝ գերակատարած մասի 20—25
տոկոսը, իսկ եգիպտացորենի կանաչ զանգվածի բերքատվության պլանը գե-
րակատարելու դեպքում՝ ավելի ստացածի արժեքի հիսուն տոկոսը։ Հնձող կոլ-
տնտեսականներին, խոտի բերքատվության առաջադրանքը կատարելու դեպ-
քում, գերակատարած յուրաքանչյուր հեկտարի դիմաց տրվում է մեկ ցենտներ
խոտ կամ դրա արժեքը, իսկ խուրձ կապողներին ու փոցխողներին՝ 50-ական
կիլոգրամ խոտ կամ՝ արժեքը և այլն։

Ջնայած անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու



digitised by A.R.A.R.@

և արտադրական տիպային շենքեր կառուցելու համար ստեղծվել են լայն հնարավորություններ, սակայն այժմ վիճակը այդ գործում լավ չէ։ Շատ կոլտնտեսություններում չկան անասնապահական հարմարավետ, տիպային շենքեր, աշխատատար բազմաթիվ պրոցեսներ մեքենայացված չեն։ Այսպես, եղած 85 կովանոցներից միայն 57-ն են տիպային. դրությունը վատ է հատկապես Աբովյանի շրջանում։ Ընթացիկ տարում կառուցվելու են անասնապահական մոտ 65 նոր շենքեր։ Եթե կոլտնտեսություններում որոշ գործ կատարված է անասունների մեխանիկական ջրամատակարարման, ներֆերմային տրանսպորտի աշխատանքները մեքենայացնելու ասպարեզում, ապա այդ նույնը չի կարելի ասել կթի, կերի պատրաստման ագրեգատների, ավտոխմոցների տեղադրման վերաբերյալ։

Մեքենայացումը հնարավորություն է տալիս ո՛չ միայն թեթևացնելու կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների աշխատանքը, այլև մեծ քանակությամբ էժան մթերքներ ստանալու։ Լրացուցիչ եկամուտների ավելացման հաշվին մեր տնտեսությունները պլանավորել են այս տարի ձեռք բերել և ֆերմաներում տեղադրել բազմաթիվ ագրեգատներ, սարքավորումներ։ 1962 թվականին ֆերմաներում (1063 գլուխ խոշոր եղջերավոր անասունների համար) կատարվելու է աշխատանքների կոմպլեքսային մեքենայացում (կերակրում, ջրամատակարարում ավտոխմոցների միջոցով, կիթ, գոմաղբի տեղափոխում). Նախատեսված է մեքենայացնել աշխատատար մի շարք պրոցեսներ, հատկապես կովերի կիթը։ Այսպես, վերջին ամիսներին Հրազդանի շրջանի Քաղսիի կոլտնտեսությունում սարքավորված է կթի ագրեգատ. Նախապատրաստական աշխատանք է տարվում № 1 սովխոզում և Մեղրաձորի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայում ջրամատակարարման, գոմաղբի տեղափոխման պրոցեսները մեքենայացնելու, ավտոխմոցներ տեղադրելու ուղղությամբ։ Աբովյանի շրջանի երկու կոլտնտեսությունների ֆերմաներում մեքենայացվում են գոմաղբի հավաքման ու փոխադրման պրոցեսները։

Կոնկրետ միջոցառումներ են իրականացվում անասնաբուծական մթերքների, առանձնապես մսի արտադրությունն ավելացնելու համար։ Ձգտում ենք հասնել այն բանին, որ վճռականորեն ավելանա մսի ու կաթի արտադրությունը, զգալի չափով իջնի դրանց ինքնարժեքը, որով հնարավոր կլինի ապահովել անասնապահական ֆերմաների շահութաբերությունը։

Անցյալ տնտեսական տարում հարյուր հեկտար գյուղատնտեսական հողատարածության դիմաց վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում ստացվել է՝ 133,9 ցենտներ կաթ, 34,5 ցենտներ միս, 206 կիլոգրամ բուրդ. հարյուր հեկտար հացահատիկի ցանքատարածության դիմաց՝ 14,7 հազար հատ ձու։ Դա վկայում է այն մասին, որ մեր շատ տնտեսություններում անասնաբուծությունը գտնվում է ցածր մակարդակի վրա. ծախսումներն այնքան մեծ են, որ դրանք չեն կարող ծածկվել անգամ գնման նոր գներով։

Առաջավոր տնտեսությունների կողքին ունենք այնպիսիները, որտեղ նվազ է արտադրանքը, իսկ ինքնարժեքը՝ խիստ բարձր։ Սեմյոնովկայի սովխոզում (Սևանի շրջան), չնայած բարենպաստ պայմաններին (ալպյան հարուստ արոտավայրեր ու խոտհարքներ, անասնապահական լավ շենքեր, բանիմաց կադրեր), ստացվում է քիչ արտադրանք. տնտեսությունը հաշվենկատորեն չվարելու պատճառով այստեղ մեծ են անարտադրողական ծախսերը, բարձր է արտադրված մթերքների ինքնարժեքը։ Օրինակ, 1961 թվականին մեկ ցենտներ



կաթի ինքնարժեքը կազմել է մոտ 15 ռուբլի, խոզի մսի ինքնարժեքի պլանային ցուցանիշները գերազանցվել են մոտ չորս անգամ և այլն։ Միայն մեկ տարվա ընթացքում տնտեսությունը կրել է 73 հազար ռուբլու վնաս։ Նման օրինակներ կարելի է բերել մյուս տնտեսություններից։

Լուրջ մտահոգություն է պատճառում մսի արտադրության խնդիրը։ Այդ գործում դեռևս վճռական բեկում չի նկատվում նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում. 4562 ցենտների դիմաց արտադրվել է ընդամենը 2837 ցենտներ։ Այդ վիճակից դուրս գալու նպատակով բոլոր տնտեսություններում առանձնացվել են 3500 գլուխ խոշոր, 11000 գլուխ մանր եղջերավոր անասուններ, 1000 գլուխ խոզ և դրվել են բտման տակ. լավ խնամքի ու կերակրման պայմաններում մեր տնտեսությունները կկարողանան հենց այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, զգալիորեն ավելացնել մսի արտադրանքը և պատվով կատարել մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Արդեն մշակված է կոնկրետ պլան, որով նախատեսվում է, թե որքան անասուն է բտվելու 1963 թվականին, որքան կեր է պետք և ով է պատասխանատու դրա համար։ Որոշակի գործ է կատարվում անասունների ստերջությունը վերացնելու և անկումները կանխելու համար։ Դրա վրա մենք առանձնահատուկ ուշադրություն ենք դարձնում, որովհետև անասունների որոշ մասի ստերջության ու անկումների հետևանքով ամեն տարի տալիս ենք մոտ 2000 ցենտներ մսի կորուստ։ Այդ վիճակին վերջ տալու համար բոլոր տնտեսություններում կազմակերպված է անասունների արհեստական սերմնավորման և մատղաշներն անկորուստ աճեցնելու գործը։ Մսի արտադրությունն ավելացնելու նպատակով ընթացիկ տարում տասը հազար թևով կավելանա թռչունների թիվը. գործնական աշխատանք է կատարվում հատկապես Սևանի և Աբովյանի շրջաններում խոզաբուծությունը զարգացնելու համար։ Անասնաբուծական մթերքների և, հատկապես, մսի ու կաթի արտադրությունն ավելացնելու նպատակով մշակված են և կիրառվում են լրացուցիչ վարձատրության պրոգրեսիվ ձևեր։

Մշակված պլանի համաձայն հարյուր հեկտար վարելահողի դիմաց կարտադրվի 75 և հարյուր հեկտար մյուս հողատարածությունների դիմաց՝ 16 ցենտներ միս։ Դա մեր առաջին բնագիծն է։

Մեր կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն մեծ հնարավորություններ ու ռեզերվներ, որոնց խելացի օգտագործմամբ հնարավոր կլինի շեշտակի ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Ա. ՓՈԼԱԴՅԱՆ
Հրազդանի կոլտնտեսային-սովխոզային
տերիտորիալ արտադրական վարչության պետ

---



digitised by A.R.A.R.@

## ՍՈՎԽՈԶԻ ԲԱՐՁՐ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ամեն մի սովխոզի պարտիական կազմակերպության աշխատանքը, որպես կանոն, գնահատվում է տվյալ տնտեսության արտադրական գործունեության արդյունքով։ Այդ կարելի է ցույց տալ Հոկտեմբերյանի շրջանի պտղաբուծական-խաղողագործական չորրորդ սովխոզի օրինակով, որը սիստեմատիկաբար ավելացնում է իր եկամուտները և շահույթները։ Այսպես, 1959 թվականին սովխոզը տվել է 258 հազար ռուբլի շահույթ, 1960 թվականին՝ 392, իսկ անցյալ տարի սովխոզի շահույթը հասավ 547 հազար ռուբլու։ Մինչև 1962 թվականի հունվարի 1-ը տնտեսության հիմնական միջոցները կազմել են 2.219.830 ռուբլի, որը 731.930 ռուբլով ավելի է, քան 1959 թվականին։

Արտադրական բարձր ցուցանիշների համար վերջին տարիներին սովխոզը վեց անգամ մասնակցել է Համամիութենական գյուղատնտեսական և ՍՍՌՄ Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսներին, իսկ 1961 թվականին՝ Էրֆուրտ քաղաքում (ԳԴՌ) կազմակերպված միջազգային ցուցահանդեսին. սովխոզի ցուցադրած դեղձն ու սալորն արժանացան ոսկե մեդալի։

Ինչո՞ւմն է № 4 սովխոզի արտադրական-տնտեսական հաջողությունների գաղտնիքը։ Սովխոզի պարտիական կազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Ս. Գալստյան) հմտորեն է զբաղվում աշխատանքի ու արտադրության կազմակերպման, տնտեսության էկոնոմիկայի հարցերով։

Պարտիական կազմակերպությունը, ամբողջությամբ վերցրած, և ամեն մի կոմունիստ մոտ են կանգնած արտադրությանը։ Սովխոզի կոմունիստների մեծ մասն աշխատում է արտադրության ամենավճռական տեղամասերում։ Այդ հանգամանքը ապահովում է արտադրության նկատմամբ պարտիական կազմակերպության վերահսկողության գործնական իրականացումը և բարձրացնում աշխատողների պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի նկատմամբ։ Իրենց ջանասեր աշխատանքով աչքի են ընկնում հատկապես սովխոզի կոմերիտականներն ու երիտասարդները. 130 կոմերիտականներից և ոչ մեկը արտադրությունից դուրս չի մնացել, նրանցից շատերն առաջավորներ են։

Միաժամանակ տնտեսության հրամանատարական կադրերը լավ են ընտրվել ու տեղաբաշխվել։ Դրանցից շատերը գյուղատնտեսական աշխատանքի մեծ փորձ ունեն։ Սովխոզի դիրեկտոր Մ. Գրիգորյանը մասնագիտությամբ ագրոնոմ է և ձեռներեց կազմակերպիչ, ղեկավար։ Գլխավոր ագրոնոմ Կ. Կոստանյանը ռեսպուբլիկայի վաստակավոր ագրոնոմներից է։ Տնտեսության բոլոր ցեխերի վարիչները և բրիգադավարները գյուղատնտեսության մասնագետներ են։

Պարտիական կազմակերպությունը համակողմանիորեն խորամուխ է լի-



նում սովխոզի էկոնոմիկայի և ադմինիստրացիայի գործունեության մեջ, հանգամանորեն ուսումնասիրում և հայտաբերում արտադրության ներքին ռեզերվներն ու հնարավորությունները, հոգ տանելով, որպեսզի այն օգտագործվի լրիվ ու նպատակահարմար։ Պարտկազմակերպությունը և նրա բյուրոն լավ տեղյակ են յուրաքանչյուր արտադրական տեղամասի գործերի վիճակին, մի բան, որը հնարավորություն է տալիս նրանց՝ ժամանակին կանխելու աշխատանքում նկատված թերությունները։

Սովխոզի շահութաբերության հարցը կոմունիստների գործունեության հիմքն է։ Անվիճելի է, որ ավելի նպաստավոր վիճակում է այն սովխոզը, որն արտադրում է ավելի շատ, ավելի էժան մթերքներ և ստանում է մեծ շահույթներ։ Այստեղից էլ պարտիական կազմակերպությունն իր պրակտիկ գործունեությամբ ձեռնարկում է անհրաժեշտ բոլոր միջոցները՝ տնտեսության շահութաբերությունն ապահովելու համար։

Պարտիական ժողովներում հաճախ է լսվում սովխոզի շահութաբերության բարձրացման մասին։ Այդ հարցի քննարկմանն ակտիվ մասնակցում են բոլոր կոմունիստները, մշակվում են գործնական միջոցառումներ։ Պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ բանվորների ու ծառայողների արտադրական խորհրդակցություններում պարբերաբար քննարկվում են տնտեսության արտադրական գործունեության հասունացած և արմատական հարցերը, հաշվի են առնվում կոլեկտիվի անդամների խելամիտ առաջարկությունները. Հատուկ ուշադրություն է հատկացվում աշխատանքի կազմակերպման ու վարձատրության, կարգապահության ամրապնդման և աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։

Իր առօրյա գործունեության մեջ սովխոզի պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն կարողանում են հմտորեն զուգակցել քաղաքական և տնտեսական աշխատանքը, իրենց վրա չվերցնելով դիրեկցիայի ֆունկցիաները։

Պարտիական կազմակերպությունը գործարար կերպով զբաղվում է բանվորների և ծառայողների շրջանում սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման գործով, ընդհանրացնում ու տարածում է արտադրության առաջավորների աշխատանքային հարուստ փորձը։ Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի հետ կնքված մրցության պայմանագրով ստանձնած պարտավորություններին քաջատեղյակ են կոլեկտիվի բոլոր անդամները և համառ ջանքեր են գործադրում մրցությունից պատվով դուրս գալու համար։

Սովխոզի պարտիական կազմակերպությունը մեծ նշանակություն է տալիս կոլեկտիվի անդամների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպմանը։ Այստեղ կոլեկտիվի անդամների համար հաճախ են կազմակերպվում զեկուցումներ, դասախոսություններ, զրույցներ։ Ընթացիկ տարվա անցած հինգ ամսում կարդացվել են ավելի քան քսան դասախոսություն ու զեկուցում։

Վատ չի աշխատում ագիտկոլեկտիվը։ Ագիտատորներ Ա. Առաքելյանի, Մ. Պողոսյանի, Ա. Մնացականյանի և մյուսների զրույցների հիմնական թեման պարտիայի արտաքին ու ներքին քաղաքականության, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու տնտեսության շահութաբերության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերն են։ Գյուղատնտեսության մասնագետների և արտադրության հրամանատարների զգալի մասն աշխա-



digitised by A.R.A.R.@

տավորների շրջանում կատարում է պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանք. Հենց այդ մարդիկ էլ փաստորեն տնտեսության շահութաբերության համար մղվող պայքարի կազմակերպիչներն են։ Տնտեսության եկամտաբերության բարձրացմանը և էկոնոմիկայի ամրապնդմանը վերաբերող զրույցները միշտ էլ մեծ հետաքրքրությամբ են ունկնդրում բանվորներն ու ծառայողները։

Պարտիական կազմակերպությունը սովխոզի կոլեկտիվի ուշադրությունը բևեռել է գյուղատնտեսական արտադրության բարձր կուլտուրայի համար, խաղողագործության ու պտղաբուծության, ինչպես նաև արտադրության օժանդակ ճյուղերի շեշտակի վերելքի համար մղվող պայքարի հարցերին։

Սովխոզում լուրջ ուշադրություն է նվիրվում հողային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման, աշխատատար պրոցեսների և, մանավանդ, խաղողի այգիների միջշարային մշակման մեքենայացման հարցերին։ Պայքար է մղվում խաղողի և պտղի այգիների տարածությունների ընդլայնման, ինչպես նաև գոյություն ունեցող պլանտացիաների նոսրությունը վերացնելու համար։ Բավական է նշել, որ միայն վերջին երկու տարում՝ 1960—1961 թվականներին, սովխոզի խաղողի ու պտղի այգիների տարածությունն ընդարձակվել է 294 հեկտարով։ Նվազագույնի է հասցվել խաղողի այգիների նոսրությունը։

Զգալիորեն բարձրացել է այգիների բերքատվությունը, իջել արտադրանքի ինքնարժեքը։ Այսպես, օրինակ, պտղի այգիների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 1961 թվականին կազմեց 88 ցենտներ, իսկ խաղողի այգիներինը՝ 83 ցենտներ, որը համապատասխանորեն 12,8 և 7,6 ցենտներով ավելի է, քան 1959 թվականին ստացվածը։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ ընթացիկ տարում լավ բերք է սպասվում խաղողից, պտուղներից և մյուս գյուղատնտեսական կուլտուրաներից։

Ակնառու կերպով իջել է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Այսպես, օրինակ, եթե 1959 թվականին խաղողի մեկ ցենտների ինքնարժեքը կազմել է 17 ռուբլի, ապա 1961 թվականին այն դարձել է 13 ռուբլի 37 կոպեկ կամ իջել է 3 ռուբլի 63 կոպեկով։ Մեկ ցենտներ պտղի ինքնարժեքը համապատասխանորեն 1959 թվականին եղել է 7 ռուբլի 6 կոպեկ, իսկ 1961 թվականին՝ 6 ռուբլի 20 կոպեկ։ Իջել է նաև կաթի, մսի և մյուս գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Վերջին երեք տարում սովխոզը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է արտադրանքի ինքնարժեքի իջեցման և մաքուր շահույթների պլանները։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացումը, անշուշտ, վճռական դեր է խաղում շահույթների ավելացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում։ Մեծ են սովխոզի եկամուտներն ավելացնելու և տնտեսությունն ավելի շահութաբեր դարձնելու հնարավորությունները ինչպես արտադրանքի սորտայնության և կազմակերպվող աշխատանքի որակի բարելավման, այնպես էլ նյութերի, միջոցների, հումքի խնայողության, անարտադրողական ծախսերի կրճատման հաշվին։ Անցյալ տարի արտադրվել են զգալի չափով մթերքներ, նրանց արտադրման վրա քիչ միջոցներ ծախսելով։ Այդ ծախսերը 1961 թվականին շատ ավելի քիչ էին, քան անցյալ տարիներին։ Այսպես՝ 1960 թվականին սովխոզի արտադրական կարիքների համար ծախսվել է 51,3, իսկ 1961 թվականին՝ 44 հազար ռուբլի։



Պարտիական կազմակերպությունը լավ է հասկանում, որ սովխոզում վերջին տարիներս տեղի ունեցած տեղաշարժերը չեն կարող բավարարել օրվա պահանջը։ Բանն այն է, որ այստեղ ամենևին էլ բոլոր հնարավորությունները չէ, որ օգտագործվում են խաղողի, պտուղների, բանջարեղենի բերքատվությունը բարձրացնելու, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու համար։

Սովխոզի կոլեկտիվը դեռևս մեծ գործ ունի անելու աշխատատար պրոցեսների, մանավանդ խաղողի այգիների միջշարային մշակումը մեքենայացնելու ուղղությամբ։ Անհրաժեշտ է բոլորովին վերացնել խաղողի և պտղի այգիների նոսրացածությունը, լուրջ ուշադրություն հատկացնել պլանների կատարմանը։ Թեև արտադրանքի ինքնարժեքը ցածր է պլանայինից, բայց այն դեռևս բարձր է առաջավոր սովխոզների ցուցանիշներից։ Հենց այդ էր ընդլայնված պարտիական ժողովի ուշադրության առարկան, որտեղ քննարկվում էր ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների կենսագործման հարցը։ Մեծ են անելիքները բանվորական կադրերի ուսուցման ու որակավորման ասպարեզում։

Սովխոզի պարտիական կազմակերպության առաջ այժմ դրված են մեծ խնդիրներ՝ ավելի ընդլայնել խաղողի և պտղի այգիների տարածությունը, բարձրացնել հողագործության և անասնաբուծության կուլտուրան, լրիվ օգտագործել ներքին ռեզերվները, ապահովել իրեն վստահված տնտեսության բարձր շահութաբերությունը, ամրապնդել նրա էկոնոմիկան։

**Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ**

---

Գյուղատնտեսության վարգացման ասպարեզում հարաճուն դեր են խաղում *սովխոզները*՝ գյուղում առաջատար սոցիալիստական այդ ձեռնարկությունները: Սովխոզները կոչված են կոլտնտեսությունների համար ծառայել հասարակական արտադրությունը վարելու առաջավոր, գիտականորեն հիմնավորված, տնտեսապես շահավետ մեթոդների, աշխատանքի բարձր կուլտուրայի և բարձր արտադրողականության օրինակ:

ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ

digitised by A.R.A.R.@

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՈՌՈԳՈՒՄԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ ԵՎ ՆՐԱ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Գ. ԲԱՂՐԱՄՅԱՆ

Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստր

Գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման գործում (հատկապես մեր ռեսպուբլիկայի հողակլիմայական պայմաններում) ոռոգումն ունի չափազանց խոշոր նշանակություն, առանձնապես այն շրջանների համար, որտեղ մթնոլորտային տեղումների սակավությունը (մեծ մասամբ ամռան ամիսներին) հնարավորություն չի տալիս ո՛չ միայն ստանալու գյուղատնտեսական կուլտուրաների քիչ թե շատ բարձր բերք, այլև զբաղվելու արդյունավետ դաշտավարությամբ։ Մեր ռեսպուբլիկայում այդպիսի շրջաններից են՝ Հոկտեմբերյանը, Էջմիածինը, Արտաշատը, Վեդին, Աշտարակը, Թալինը, Անին, Մեղրին, Աբովյանը, Ախուրյանը, Եղեգնաձորը, Ազիզբեկովը, մասամբ՝ Իջևանը, Շամշադինը, Սիսիանը, Գորիսը, Ղափանը և այլ շրջաններ, որտեղ ամռան ամիսներին մթնոլորտային տեղումները հասնում են մի քանի տասնյակ միլիմետրի։ Այս է հիմնական պատճառը, որ դեռ շատ հին ժամանակներից հայ գյուղացին չափազանց մեծ նշանակություն էր տալիս ոռոգման սիստեմի կառուցմանը։

Հայաստանում ոռոգման պատմությունն սկսվում է հին դարերից։ Մինչև օրս դեռ գործում են ջրատնտեսական առանձին սիստեմներ, ինչպիսիք են՝ նախկին Սարդարաբադի, Դալմայի, Էջմիածնի և այլ ջրանցքները, որոնք կառուցվել են շատ հնուց։ Այդ սիստեմները՝ ապառաժների մեջ փորված թունելները, ապացույց են այն համեմատաբար բարձր կուլտուրայի, որը գոյություն է ունեցել Հայաստանում նաև իռիգացիոն շինարարության ասպարեզում։

Չնայած որ Հայաստանն իրոք համարվում է այն երկրներից մեկը, որտեղ գոյություն ունեն ամենահնագույն ջրատնտեսական կառուցվածքներ, այնուամենայնիվ կատարված աշխատանքները եղել են չափազանց քիչ և չեն բավարարել տնտեսության պահանջները։ Բավական է նշել, որ 1913 թվականին ռեսպուբլիկայի ներկա տերիտորիայում ոռոգման ցանցն ընդգրկել է ընդամենը 97 հազար հեկտար, 1920 թվականին (ոռոգման ցանցի մի մասի ավերման հետևանքով) այդ տարածությունն իջավ 61 հազար հեկտարի։

Երկրում ջրատնտեսական շինարարությունը, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին զուգընթաց, արագ տեմպերով սկսեց զարգանալ միայն Սովետական կարգերի հաստատումից հետո։ Սկզբնական շրջանում վերականգնվե-



ցին խափանված ջրանցքները, և ապա սկսվեց նոր ջրանցքների և ջրհան կայանների կառուցումը։

Հոկտեմբերյանի, Շիրակի, Թալինի, Արզնի-Շամիրամի, Կոտայքի, Սպանդարյանի և այլ ջրանցքները ոռոգում են ընդարձակ տարածություններ։ Այժմ մեր ռեսպուբլիկայում ոռոգվում է 250 հազար հեկտարից ավելի հող։ Նախկինում ամայի տարածություններից այժմ սովխոզներն ու կոլտնտեսություններն ստանում են բարձր ու կայուն բերք՝ անկախ մթնոլորտային տեղումներից։

Հատկապես վերջին տարիներս մեզ մոտ շատ ջրհան կայաններ են կառուցվել։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 80-ից ավելի ջրհան կայաններ։ Դրանցից են՝ Այգր լճինը, Սև ջրինը, Սովետականինը, Կոտայքինը, Արմաշինը, Շնողինը, Ճոճկանինը, Արջուտինը, Ժդանովինը, Սպիտակինը և այլն, որոնք հնարավորություն են տալիս էլեկտրական պոմպերի միջոցով ջուրը բարձրացնել և ոռոգել լեռնալանջերն ու բարձրադիր հողատարածությունները։

Անցյալում ամառային և ձմեռային արոտների մեծ մասը անասունների համար խմելու ջուր չուներ, դրա պատճառով արոտային ժամանակաշրջանը կրճատվում էր, որը խիստ բացասաբար էր անդրադառնում կաթնատվության և անասնապահական մյուս մթերքների արտադրության վրա։ Ռեսպուբլիկայում 1956 թվականից ծավալուն աշխատանք է կատարվում նաև արոտավայրերի ջրարբիացման գծով։ Դրա շնորհիվ տեղական աղբյուրների ջրերը խողովակաշարերի միջոցով տեղափոխվում են արոտավայրերի տարբեր կետերը և հարկ չի լինում անասունները ջրելու համար տասնյակ կիլոմետրեր քշել։ Այնտեղ, ուր աղբյուրներ չկան, կառուցվում են փոքր ջրամբարներ, որտեղ կուտակվում են ձյան հալոցների և անձրևների ջրերը. ամռան ամիսներին խողովակներով ջուրը հոսում է դեպի արոտավայրերը։ Կատարված աշխատանքների շնորհիվ այժմ Արագածի ստորոտներում, Աղմաղանի, Կարախաչի և այլ լեռնաշղթաներում ջրարբի է դարձել 57 հազար հեկտար արոտավայր, որն օգտագործում են Աբովյանի, Ապարանի, Հրազդանի, Սևանի, Կամոյի, Մարտունու, Թալինի, Արթիկի, Ղուկասյանի և այլ շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները։

Անցած ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում ծավալուն աշխատանքներ են տարվել ճահիճների և գերխոնավացած հողերի չորացման ուղղությամբ։ Այժմ ռեսպուբլիկայում բոլոր ճահիճները չորացված են և հազարավոր հեկտար նոր հողեր օգտագործվում են գյուղատնտեսական նպատակով։ Ճահիճների չորացումը վճռական նշանակություն ունեցավ մեր ազգաբնակչությանը ջերմախտից փրկելու գործում։ Գերխոնավացված հողերի առանձին կտորների չորացումն այժմ էլ շարունակվում է։

Ինչպես հայտնի է, մեր գետերը հորդանում են գարնանը, ձյունը հալվելուց հետո։ Ափապաշտպան կառուցվածքների բացակայության հետևանքով անցյալում գետերը հաճախ դուրս էին գալիս ափերից, ողողում մերձափնյա հողատարածությունները, փչացնում ցանքսերը և երբեմն վտանգ սպառնում գյուղերին և ազգաբնակչությանը։ Ափապաշտպան և գետերի հուների խորացման կապիտալ աշխատանքների շնորհիվ այժմ այդ վտանգը հիմնականում վերացված է։ Գետերի ափերի վտանգավոր հատվածների ամրացման գործը շարունակվում է։

Ռեսպուբլիկայում, հատկապես Արարատյան դաշտավայրում և լեռնային միշարք շրջաններում, ոռոգելի հողատարածությունների ավելացման համար որոշիչ նշանակություն ունեցավ Սևան—Հրազդանի ջրերի իռիգացիոն էներգետիկ



digitised by A.R.A.R.@

կոմպլեքսի օգտագործումը։ Արտաշատի, Ստորին Հրազդանի, Արզնի-Շամիրամի, Կոտայքի, Նորքի, Դալմայի, Հրազդանի, Ալափարսի ջրանցքների և մի շարք ջրհան կայանների կառուցմամբ ոռոգելի դարձան մեծ տարածություններ։ Այդ ջրանցքներով և ջրհան կայաններով ոռոգվում է մոտ 60 հազար հեկտար հողատարածություն՝ Արտաշատի, Էջմիածնի, Շահումյանի, Աշտարակի, Վեդու, Աբովյանի, Հրազդանի շրջաններում։ Նախատեսվում է լրացուցիչ ոռոգել մոտ 40 հազար հեկտար ևս (նոր օբյեկտների կառուցմամբ)։

Այժմ, երբ հնարավորություններ են ստեղծվում այլ աղբյուրներից էլեկտրաէներգիա ստանալու համար, նախատեսվում է խիստ պակասեցնել Սևանա լճից ջուր բաց թողնելը։ Մինչև այժմ Սևանա լճից տարեկան բաց էր թողնվում 1200—1400 միլիոն խորանարդ մետր ջուր, ընդ որում այդ կատարվում էր ելնելով էներգետիկայի պահանջներից։ Նախատեսվում է 1965 թվականից սկսած լճից բաց թողնել ընդամենը 500 միլիոն խոր. մետր ջուր՝ 380 մլն. խոր. մետրը իրիգացիոն, 120 մլ. խոր. մետրը էներգետիկ նպատակներով։ Սակայն, հաշվի առնելով, որ այս դեպքում ևս լճի ջրի մակերեսը, ճիշտ և դանդաղ, բայց այնուամենայնիվ կշարունակեր իջնել, Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը որոշեցին մշակել միջոցառումներ լճի մակերեսը անփոփոխ, բնականին մոտ մակարդակի վրա պահպանելու նպատակով։

Հայաստանի Գիտությունների ակադեմիայի, Ջրային պրոբլեմների գիտահետազոտական ինստիտուտի, «Հայհիդրոէներգոպրոեկտ» նախագծային ինստիտուտի, Ջրային տնտեսության մինիստրության «Հայջրնախագիծ» և Հիդրոտեխնիկայի ու մելիորացիայի ինստիտուտների համատեղ հետազոտությունների ու հաշվարկները ցույց տվին, որ հնարավոր է լճի ջրի մակարդակը պահպանել անփոփոխ սկզբնական հորիզոնից 20 մետր խորության վրա (կամ ներկա հորիզոնից 5 մետր ցած), որի համար մշակվեցին միջոցառումներ. դրանցից հիմնականն են՝

1. Արփա գետի ջուրը տարեկան 270 միլիոն խոր.մետր ծավալով պետք է տեղափոխվի մոտ 50 կմ. երկարություն ունեցող թունելով և լցվի Սևանա լիճը։

2. Ցածրադիր շրջաններում (հիմնականում Էջմիածնի և Արտաշատի) ստորերկրյա ջրերի օգտագործմամբ հնարավոր կլինի Սևջուր գետը ջրհան կայանների միջոցով բարձրացնել մինչև Արտաշատի Ստորին, Հրազդանի և Էջմիածնի ջրանցքները և դրանով փոխարինել ոռոգման նպատակով ծախսվող Սևանի ջուրը։ Նախատեսվող Արևշատի և Մխչյանի ջրհան կայանները հնարավորություն կտան Սևանից հոսող ջուրը պակասեցնել 106 միլ. խոր. մետրով։

3. Քասախ գետի վրա կառուցվող՝ Ապարանի ջրամբարը ջուր կտա Արզնի-Շամիրամի և Ստորին-Հրազդանի ջրանցքներին, Սևանի ջրի փոխարեն։

4. Բարձրացնել գործող և կառուցվող ոռոգման սիստեմների օգտակար գործողության գործակիցը և խնայողաբար օգտագործելով ջուրը՝ նվազեցնել նրա պահանջը մինչև նվազագույն անհրաժեշտ չափերի։

Այս միջոցառումների իրականացումը ռեալ հնարավորություններ կստեղծի 1970 թվականից սկսած Սևանա լճից ոռոգման նպատակներով բաց թողնվող ջրի քանակը սահմանափակել՝ հասցնել տարեկան ընդամենը 170—200 միլիոն խոր. մետրի, որով և կապահովվի լճի անփոփոխ մակերեսը։

Այժմ կազմվում են նշված միջոցառումների նախագծերը, տեղում կատարվում է գործնական աշխատանք։



Կոմունիստական պարտիան գտնում է, որ բազմակողմանի զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսություն ստեղծելու համար անհրաժեշտ է նաև «իրագործել իռիգացիոն շինարարության ընդարձակ ծրագիր՝ չորային շրջաններում միլիոնավոր հեկտար նոր հողեր ոռոգելու ու ջրովի դարձնելու և գոյություն ունեցող ջրովի հողագործության վերելքի համար» (ՍՄԿՊ Ծրագրից)։

Սովետական Հայաստանում մշակված է առաջիկա քսանամյակում անջրդի հողերը ոռոգելու և արոտավայրերը ջրարբի դարձնելու ծրագիր։

Ապարանի ջրամբարի կառուցումը նախատեսվում է ավարտել 1964 թվականին։ Ջրամբարի օգտակար ծավալը կազմում է 80 միլիոն խոր. մետր, որի կեսը կծախսվի Սևանից բաց թողնվող ջրի փոխարեն, իսկ մնացած կեսը՝ Ապարանի և Աշտարակի շրջանների 7,5 հազար հեկտար հողատարածությունների ոռոգման համար։ Նոր հողերը կոռոգվեն Երնջատափի ջրհան կայանի և Քասախի աջափնյա ու ձախափնյա ջրանցքների կառուցմամբ։ Ջրամբարի պատվարը, որ կառուցվելու է Ապարանի շրջանի Ջովունի գյուղից երկու կիլոմետր հեռու, կունենա մոտ 50 մետր բարձրություն։ Ջրամբարը բացի ոռոգման նպատակներին ծառայելուց կհանդիսանա ռեսպուբլիկայի ամենագեղեցիկ հանգստավայրերից մեկը։

Ընթացիկ տարում կավարտվի ռեսպուբլիկայի երեք խոշոր ջրանցքների՝ Արզնի-Շամիրամի առաջին հերթը, Թալինի և Կոտայքի ջրանցքների շինարարությունը, որոնց շնորհիվ կոռոգվի 30 հազար հեկտար հողատարածություն։ Այդ տերիտորիաներում կազմակերպված սովխոզները նոր ոռոգվող տարածություններում կտնկեն խաղողի ու մրգի այգիներ, կաճեցնեն բանջարաբոստանային և կերային կուլտուրաներ։ Սովխոզների մի մասն արդեն ստանում է խաղողի բարձր բերք։

Անցյալ տարվանից սկսվել է՝ Ախուրյանի շրջանում Կապսի, Ամասիայի շրջանում՝ Գյալիբալաշի, Եղեգնաձորի շրջանում՝ Գետափի, Աղավնաձորի, Ալավերդու շրջանում՝ Այրում-Ճոճկանի խոշոր ջրհան կայանների շինարարությունը, որոնք կոռոգեն 7 հազար հեկտարից ավելի տարածություն, որը կօգտագործվի հիմնականում շաքարի ճակնդեղի, խաղողի ու մրգի այգիների և կերային կուլտուրաների աճեցման նպատակով։ Այս խոշոր օբյեկտներից բացի Ապարանի, Նոյեմբերյանի, Հրազդանի, Իջևանի, Թալինի, Կամոյի անվան, Սպիտակի, Վեդու, Շամշադինի, Ղափանի, Մեղրու և այլ շրջաններում կառուցվում են ջրհան կայաններ, ջրամբարներ և ջրանցքներ, որոնք ընթացիկ տարում կոռոգեն 4500 հեկտարից ավելի հողատարածություններ։

Արթիկի շրջանում կառուցվող Մանթաշի ջրամբարը հնարավորություն կտա ամբարելու մոտ 7 միլիոն խոր. մետր ջուր և ոռոգելու 4000 հեկտար հողատարածություն։

Կարճ ժամանակում տնտեսապես նշանակալի արդյունք տվեց Թալինի շրջանի Ներքին Սասնաշենի ջրամբարը, որը միայն մեկ տարվա շահագործմամբ կոլտնտեսությանը տվեց 10 հազար ռուբլուց ավելի լրացուցիչ եկամուտ։ Այժմ այդ ջրամբարի պատվարը բարձրացվում է և հնարավորություն կստեղծվի ամբարելու մոտ 1.5 միլիոն խոր. մետր ջուր, որից կօգտվեն նաև շրջանի մյուս գյուղերը։ Այսպիսով, ընթացիկ տարում լրացուցիչ կոռոգվի 7 հազար հեկտար նոր հողատարածություն և կբարելավվի 1200 հեկտար հողերի ջրապահովությունը։

Այս տարի խոշոր աշխատանքներ են տարվում արոտավայրերի ջրարբիաց-



digitised by A.R.A.R.@

ման գծով։ Ջրարբի կդառնան 30 հազար հեկտար արոտավայրեր Ապարանի, Աշտարակի, Աբովյանի, Կամոյի անվան, Մարտունու, Բասարգեչարի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի, Սիսիանի և այլ շրջաններում։

Մինչև յոթնամյակի վերջը նախատեսվում է (1958 թվականի համեմատությամբ) ռեսպուբլիկայի ոռոգելի տարածությունները ավելացնել 84 հազար հեկտարով և ջրարբի դարձնել 180 հազար հեկտար արոտավայրեր։

Այդ ժամանակամիջոցում նախատեսվում է կառուցել Ախուրյանի ջրամբարը, Արզնի-Շամիրամի ջրանցքի երկրորդ հերթը, Տաթևի ջրանցքը, Նոյեմբերյանի, Գետափ-Աղավնաձորի, Մխչյանի և այլ խոշոր ջրհան կայաններ, մի շարք ջրանցքներ և ջրամբարներ ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում։

Ախուրյանի ջրամբարը համանուն գետի վրա կուտակելու է 560 միլիոն խոր. մետր ջուր, որը հնարավորություն կտա Անիի և Թալինի շրջաններում լրացուցիչ ոռոգելու 22 հազար հեկտար հողատարածություն։ Միաժամանակ ջրամբարի ջրի մի մասը կօգտագործվի Հոկտեմբերյանի շրջանի ցանքատարածությունների ջրապահովվածությունը բարելավելու համար։ Ախուրյանի ջրամբարի կառուցումը հնարավորություն կտա Արփա լճի ջուրն ամբողջությամբ օգտագործելու Ամասիայի, Անիի և Ախուրյանի շրջանների հողատարածությունների ոռոգման համար. լրացուցիչ կերպով կոռոգվի 8 հազար հեկտար հողատարածություն։ Ջրամբարի պատվարը նախատեսվում է կառուցել Անիի շրջանի Ներքին Ջրարփի գյուղի մոտ, Ախուրյան գետի վրա։

Արզնի-Շամիրամի ջրանցքի 2-րդ հերթը կոռոգի 17 հազար հեկտար հողատարածություն Աշտարակի շրջանում, Քասախ գետի աջ ափին։ Ընթացիկ տարվա երկրորդ կեսից կսկսվեն այդ ջրանցքի շինարարական աշխատանքները, և 1964 թվականից սկսած կենարար ջուր կստանան առաջին հազար հեկտարները։ Քասախ գետը ջրանցքը կհատի մետաղյա խոշոր խողովակաշարով, որը մեկ վայրկյանում բաց կթողնի 15 խորանարդ մետր ջուր։

Տաթևի ջրանցքը ոռոգելու է Գորիսի շրջանի Այգեձոր, Զորաշեն, Խնձորեսկ, Քարահունջ և Տեղ գյուղերի կոլտնտեսությունների 5000 հեկտար հողատարածությունը։ Ջրանցքը սկիզբ կառնի Տաթևի հիդրոէլեկտրակայանի ճնշման ավազանից և կունենա մոտ 35 կմ երկարություն։ Հետագայում ջրանցքի վրա ջրհան կայանների կառուցման միջոցով հնարավոր կլինի ոռոգել ևս 1000 հեկտար հողատարածություն։ Այժմ կազմվում է ջրանցքի նախագիծը, իսկ շինարարական աշխատանքները կսկսվեն 1963 թվականին։ 1963 թվականին կկազմվեն Մխչյանի և Արևշատի ջրհան կայանների նախագծերը, իսկ դրանց շինարարությունը կսկսվի 1964 թվականից այն հաշվով, որ մինչև 1965 թվականը ավարտվի։

Այս տարի կկազմվի Նոյեմբերյանի ջրհան կայանի նախագիծը՝ 1963 թվականին շինարարությունն սկսելու համար։ Այս կայանի միջոցով Դեբեդ գետի ջուրը (4 կմ. երկարությամբ մետաղյա խողովակաշարով) կբարձրացվի մոտ 400 մետր և կոռոգվի 4000 հեկտար տարածություն, որը հիմնականում կօգտագործվի խաղող ու միրգ, ինչպես նաև մերձարևադարձային կուլտուրաներ աճեցնելու համար։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում կկառուցվեն մոտ 70 ջրհան կայան, ջրանցքներ ու ջրամբարներ։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի գետերի ողջ բնական հոսքը կօգտագործվի արդեն նախատեսված ու կառուցված օբյեկտներով և այլևս ջուր չի լինի նոր հողատարածություններ ոռոգելու, ջրային տնտեսության օրգանների առաջ խնդիր է դրված՝ հետազոտել և հայտաբերել նոր ջրամբարներ կառուցելու հնարավորությունները։ Այդ ջրամբարներում կհավաքվի ձյան հալոցքից և անձրևներից առաջացած ջուրը՝ ամռան ամիսներին օգտագործելու նպատակով։ «Հայջրնախագիծ» նախագծային ինստիտուտը մի շարք շրջաններում արդեն ձեռնարկել է այդպիսի հետազոտություններ։



Հնարավոր կլիներ ջրատնտեսական շինարարությունն ավելի արագ կատարել և ավելի շատ նոր օբյեկտներ կկառուցվեին, եթե ջուր օգտագործող կոլտնտեսություններն ավելի ակտիվ մասնակցեին դրանց կառուցմանը։ Սակայն ռեսպուբլիկայի մի շարք շրջանների կոլտնտեսություններ իրենց միջոցներով ո՛չ միայն չեն կառուցում նույնիսկ ջրատնտեսական օբյեկտներ, այլև չեն կատարում պլանով նախատեսված պարտավորությունները շինարարություններին մասնակցելու գծով, չեն տրամադրում բանվորական ուժ։

Ժողովրդական տնտեսության ընթացիկ տարվա պլանով նախատեսված է, որ շահագրգռված կոլտնտեսությունները պետք է իրենց ուժերով և միջոցներով կատարեն 300 հազար ռուբլու աշխատանք։ Բայց առաջին կիսամյակում Աբովյանի, Արթիկի, Թալինի, Ապարանի, Կամոյի անվան, Աշտարակի և այլ շրջանների կոլտնտեսությունները իրենց միջոցներով գրեթե ոչ մի աշխատանք չեն կատարել ինչպես ոռոգման, այնպես էլ արոտավայրերը ջրարբի դարձնելու գծով։ Ջրատնտեսական շինարարության նկատմամբ եղած այսպիսի վերաբերմունքը վնաս է հասցնում գյուղատնտեսությանը և դանդաղեցնում նրա զարգացումը։

Ինչպես ամեն մի, այնպես էլ ջրատնտեսական շինարարության աշխատանքներն արագ ու բարձր որակով կատարելու գործում խոշոր նշանակություն ունեն արտադրական մանր պրոցեսների մեքենայացումն ու ինդուստրացումը, որին կարելի է հասնել հավաքովի կոնստրուկցիաների և մեխանիզմների լայն կիրառման միջոցով։ Վերջին տարիներս ոռոգման մանր ցանցի կառուցման համար մեծ մասշտաբներով կիրառվում են երկաթ-բետոնե հավաքովի կիսախողովակներ, որոնք պատրաստվում են հատուկ գործարաններում։ Կիսախողովակների կիրառումը հնարավորություն է տալիս շինարարական հրապարակներում կատարել կոնստրուկցիաների մոնտաժի աշխատանքները տարվա բոլոր եղանակներին, որը խիստ դրական նշանակություն ունի շինարարության անընդհատության գործում։ Այդ կոնստրուկցիաներից կառուցված ջրանցքների տակ ավելի քիչ հող է զբաղեցվում, ջրի կորուստ չի լինում և գյուղատնտեսական կուլտուրաները ջրվում են ավելի հեշտ ու ցանկացած կետից։

Կիսախողովակները լայնորեն կիրառվում են Կոտայքի և Արզնի-Շամիրամի ջրանցքների շինարարության վրա, ինչպես նաև արոտավայրերի ջրարբիացման օբյեկտներում։

Այժմ սկսված է նաև առանձին փոքր կառուցվածքների արտադրությունը գործարանային պայմաններում։ Աբովյանի շրջանում կառուցվում է հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների նոր գործարան, որը տարեկան կտա հազար խոր. մետր արտադրանք։

Պարտիան և կառավարությունը խոշոր միջոցներ են ներդնում ջրային տնտեսությունն առաջ մղելու, ոռոգվող ցանքերի տարածությունն ընդարձակելու համար։ Սակայն հանրային դաշտերի բերքատվությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է ջուրն օգտագործել անընդհատ, օրվա բոլոր ժամերին, բայց



digitised by A.R.A.R.@

և խնայողաբար։ Այս գործում մեզ մոտ կան լուրջ թերություններ։ Շատ տնտեսություններում, հատկապես սովխոզներում, ցանքերն ու այգիները ջրում են օրվա ընթացքում ընդամենը 6—7 ժամ, իսկ մնացած ժամերին և, հատկապես, գիշերը ջուրը համարյա աննպատակ հոսում է։ Այսպիսի ջրօգտագործումը չափազանց մեծ լարում է առաջ բերում ոռոգման սիստեմում, որովհետև ջրանցքներն ի վիճակի չեն 6—7 ժամում թողնել 24 ժամվա ջուրը։ Հետևաբար ջուրը պետք է օգտագործել օրվա բոլոր ժամերին։ Ջուրն օգտագործող տնտեսությունները խոշոր ուշադրություն պետք է դարձնեն նաև ոռոգման ներքին ցանցի պահպանման, մաքրման և ժամանակին վերանորոգելու վրա, որպեսզի թույլ չտան ջրի կորուստ։ Սակայն շատ հաճախ մարդկանց անտարբերության հետևանքով ջուրը ողողում է ճանապարհները, քանդում ջրանցքները և գերխոնավացնում հողը։

Պետական միջոցների հաշվին սիստեմատիկաբար վերանորոգվում և վերակառուցվում են միջշրջանային և միջտնտեսային ոռոգման ցանցերը, իսկ ջրօգտագործող տնտեսություններն իրենց միջոցներով և ուժերով պետք է պահպանեն միջտնտեսային ոռոգման ցանցը, որպեսզի կենարար ջուրն օգտագործվի ռացիոնալ կերպով։

Ամեն մի սովխոզ և կոլտնտեսություն անպայման պետք է ունենա ջրօգտագործման գծով գոնե մի մասնագետ։ Պետք է առանձնացվեն ջրվորների հատուկ բրիգադաներ, որոնք ապահովեն ջրի օգտագործումը օրվա բոլոր ժամերին։ Այդպես պետք է լինի նաև սովխոզներում, որտեղ բանվորների աշխատանքային ժամը նորմավորված է. հետևաբար պետք է ունենալ ջրվորների 3 հերթափոխ բրիգադա։

Ոռոգման ջուրը խնայողաբար ծախսելու, ինչպես նաև ոռոգման պրոցեսները մեքենայացնելու նպատակով 1960—1961 թվականների ընթացքում Աբովյանի շրջանում 100 հեկտար տարածության վրա անց է կացված նաև ոռոգման փակ ցանց, որտեղ ոռոգումը կատարվելու է անձրևացման միջոցով։ Այժմ այդ սիստեմը փորձարկվում է։

Ջրատնտեսական օբյեկտների շինարարության և նրանց շահագործման աշխատանքներում թերություններ ունեն նաև Ջրային տնտեսության մինիստրության ստորաբաժանումները։ Եզակի չեն դեպքերը, երբ ջրանցքները երեսապատվում են անորակ և տեխնիկական նորմաների խախտումներով, որի հետևանքով ոռոգման սեզոնում ստիպված դադարեցվում է ջրամատակարարումը՝ նորոգումներ կատարելու համար։ Ոռոգման սիստեմների շահագործող վարչությունները միշտ չէ, որ ժամանակին են կատարում միջշրջանային և միջտնտեսային ջրանցքների մաքրման ու նորոգման գործը, ճիշտ հաշվի չեն առնում ջրօգտագործող տնտեսությունների ռեալ պահանջները, չեն ցուցաբերում անհրաժեշտ օպերատիվություն գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգումն ապահովելու համար։

Նշված թերությունների վերացումը հնարավորություն կտա ճիշտ և ռացիոնալ օգտագործել ոռոգման ջուրը և ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու կայուն բերք։

Գյուղատնտեսության արագ զարգացման գործում չափազանց մեծ և որոշակի նշանակություն ունեն նոր ոռոգելի հողատարածությունների արագ իրացումը և ռացիոնալ օգտագործումը։ Ճիշտ է, վերջին տարիներս նոր հողերի բազայի վրա կազմակերպված սովխոզները համեմատաբար մեծ տեմպերով են



իրացնում հողատարածությունները, բայց մոտ 10—12 հազար հեկտար հողատարածություն դեռ ռացիոնալ չի օգտագործվում։ Այստեղ կան նաև օբյեկտիվ պատճառներ. բանվորները ապահովված չեն բնակարաններով, ինչպես նաև անհրաժեշտ քանակությամբ մեխանիզմներով և կապիտալ ներդրումներով։ Այս հարցերը պետք է ամենակարճ ժամանակում դրականորեն լուծվեն, որպեսզի, նախ՝ ջրաշինարարության վրա ծախսված խոշոր գումարները իրենց արդարացնեն և, որ ամենագլխավորն է՝ այդ հողերից ստացվեն անհրաժեշտ մթերքներ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար օգտագործվող հողատարածությունների ընդլայնման ամենամեծ ռեզերվներից մեկն էլ աղակալած հողերի օգտագործումն է, որոնց մակերեսը մեզ մոտ կազմում է մոտ 30 հազար հեկտար։ Այդ հողերի, այսպես ասած՝ «քաղցրացման» համար այժմ հողագիտական ինստիտուտի և Գիտությունների ակադեմիայի կողմից մշակված և փորձարկված են ծծմբաթթվի կամ ծծմբային գազի կիրառման մեթոդներ, որոնք տալիս են դրական արդյունք։

Մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության համար պիտանի հողատարածությունները սահմանափակ են, սահմանափակ են նաև ջրային ռեսուրսները։ Ուստի անհրաժեշտ է խիստ ռացիոնալ օգտագործել հողն ու ջուրը, բարձր բերք և շատ անասնապահական մթերքներ ստանալու համար։

Կանցնի մեկ-երկու տասնամյակ, մեր ռեսպուբլիկայի դաշտավայրերն ու նախալեռները կպատվեն նոր ոռոգող ցանցերով, ջուրը կհոսի նոր ջրանցքներով ու առվակներով և կենդանություն կտա դաշտերին ու պապակ հողին։ Կծաղկեն և բերք կտան տասնյակ հազարավոր հեկտար անմշակ հողեր։ Սովետական Հայաստանը այգեստան կդառնա։

---

—Իրագործել իռիգացիոն շինարարության ընդարձակ ծրագիր՝ չորային շրջաններում միլիոնավոր հեկտար նոր հողեր ոռոգելու ու ջրովի դարձնելու և գոյություն ունեցող ջրովի հողագործության վերելքի համար. ընդլայնել դաշտապաշտպան անտառատնկումների, ջրավազանների կառուցման, արոտավայրերի ջրամատակարարման և չափից ավելի խոնավ հողերի մելիորացիայի աշխատանքները. սիստեմատիկ պայքար մղել հողերի ջրային ու հողմային էրոզիաների դեմ: Մեծ ուշադրություն կնվիրվի անտառների, ջրի և բնական այլ հարստությունների պահպանմանն ու ռացիոնալ օգտագործմանը, դրանց վերականգնմանն ու բազմապատկմանը (ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ):

digitised by A.R.A.R.@

ծիսակատարություններից: Հետաքրքրական է նշել, որ այդ հիվանդությունը հաղորդվում է միայն մոր կողմից:

Պատմությունը գիտե բազմաթիվ հիվանդություններ, որոնք կայուն կերպով հաղորդվում են ժառանգաբար: Այդպիսին են, օրինակ, խուլհամրությունը, շիզոֆրենիան, նյութերի փոխանակության մի շարք խախտումներ, այդ թվում պոդագրան և դիաբետը, մարմարի հիվանդությունը (ոսկորների դյուրաբեկություն), ալբինիզմը (մաշկի և մազերի գունազրկություն, վարդագույն աչքեր), վաղ ճաղատությունն ու սպիտակահերությունը և շատ այլ հիվանդություններ:

Հանկարծակի առաջացող և ժառանգաբար չհաղորդվող գենետիկ հիվանդություններից է նաև քաղցկեղը՝ մարդկության ժամանակակից պատուհասը:

Այստեղ մենք օգտագործեցինք հիվանդություն հասկացությունը: Սակայն խոսքն ավելի շատ վերաբերում է բուն իսկ օրգանիզմի արատներին, քան թե հիվանդություններին՝ սովորական իմաստով: Այդ ի՞նչ արատներ են: Ինչո՞ւ են դրանք ժառանգական: Վերջապես, ի՞նչ բան է ժառանգականությունը:

Այս հարցերի պատասխանը տալիս է հենց գենետիկան:

Ինչպես հայտնի է, ամեն մի օրգանիզմ զարգանում է մի հատիկ միկրոսկոպիկ բջջի բաժանման միջոցով, դա զիգոտան է, որը գոյանում է բեղմնավորման ժամանակ արական և իգական սեռական բջիջների ձուլվելու միջոցով: Սկզբում նրանից գոյանում են 2, իսկ հետո 4, 8, 16, և այդպես շարունակ, մոտավորապես շուրջ 20 հազար միլիարդ բջիջներ, որոնք կազմում են չափահաս մարդու օրգանիզմը: Բաժանման հետ զուգընթաց գոյանում են այս կամ այն օրգանը ձևավորող մասնագիտացած բջիջները: Սակայն բարձրագույն կենդանիների մոտ ժառանգական հատկանիշները հաղորդելու ունակությունը պահպանում են միայն սեռական բջիջները: Եվ զիգոտայի մեջ, որը գոյանում է սեռական բջիջների միաձուլման հետևանքով, պարփակված է ապագա օրգանիզմի զարգացման ամբողջ պլանը: Այդ մեկ հատիկ բջջի մեջ «նշագրված են» նրա հսկայական թվով առանձնահատկությունները, սկսած աչքերի գույնից և վերջացրած նյութերի փոխանակության ամենանրբին մանրամասնություններով: Նրա մեջ է պարփակված թե՛ առողջ և թե՛ հիվանդոտ ժառանգականությունը:

Ինչպե՞ս են այդ միկրոսկոպիկ բջջի մեջ տեղավորվում այն բազում հատկանիշները, որ պետք է ունենա հասուն օրգանիզմը: Որտե՞ղ և ինչպե՞ս է «նշագրված» այդ ամենը: Իսկ դա այնքան ամուր է «նշագրված», որ «նշագրումը» գրեթե անփոփոխ մնում է, ինչպես մենք տեսանք, շատ դարերի ընթացքում: Ասենք, այլ կերպ էլ չի կարող լինել: Չէ որ եթե չլիներ ժառանգականության պահպանողականությունը, նրա չափազանց դժվարին փոփոխականությունը, ապա բույսերի և կենդանիների տեսակները կփոխվեին շատ հաճախ: Վերջապես հաճախակի հանդես կգային նոր տեսակներ: Իսկ չէ որ մարդը և ժամանակակից զանազան կենդանիներ գոյություն ունեն մոտ մեկ միլիոն տարի: Եվ այդ ժամանակամիջոցում նրանց արտաքին տեսքը, իհարկե, փոխվել է, բայց ոչ այնքան, որ անկարելի լինի ճանաչել նրանց: Բայց, մյուս կողմից, եթե ժառանգականությունը պահպանողական է, հապա ինչի՞ հաշվին են տեղի ունենում, թեկուզ և շատ հազվադեպ, այն փոփոխությունները, որ մենք տեսնում ենք: Ինչպե՞ս են ծագում նոր հատկանիշը, նոր հատկությունները, որոնք հաճախ լուրջ ժառանգական հիվանդությունների պատճառ են դառնում:

Պատասխան ստանալու համար պետք է դիմել բջջի և, մասնավորապես, նրա ամենակարևոր մասի՝ միջուկի կազմությանը:

Պարզվում է, որ բոլոր ժառանգական հատկանիշների կրողները քրոմոսոմներն են, ամեն մի բջջի միջուկի մեջ եղած մանրագույն կազմավորումները: Այդ մասին է վկայում այն խաչավորումների հսկայական փորձը, որոնց օգնությամբ ստացվել են գյուղատնտեսական կենդանիների և բույսերի զանազան մաքուր տեսակներ: Մասնավորապես, տվյալ մեթոդից է օգտվել Ի. Վ. Միչուրինը:

Կոպիտ կերպով ասած, քրոմոսոմները նման են խրձերի: Նրանց մեջ իրար են կապված դեզօքսիռիբոնուկլեինային թթուների (ԴՆԹ) բարակ և շատ երկար մոլեկուլյար շղթաներ: ԴՆԹ-ի յուրաքանչյուր այդպիսի շղթան կազմված է հսկայական թվով մանր օղակներից՝ չորս տարբեր տեսակի նուկլեոտիդներից: Այդ օղակները հերթափոխվում են որոշակի կերպով, ընդ որին օրգանիզմի յուրաքանչյուր տեսակի համար բնորոշ է հերթափոխության իր սեփական կարգը: Հենց այդ կարգի տարբերություններն էլ որոշում են երկրագնդի վրա ապրող կենդանի օրգանիզմների ամբողջ բազմազանությունը:

Վերջին հինգ-վեց տարում քրոմոսոմների նշանակության վերաբերյալ հետևությունը մի անգամ ևս հաստատվեց: Բակտերիաների մի տեսակից ստացված մաքուր ԴՆԹ-ն մյուս տեսակի կենդանի բակտերիաների մեջ տեղափոխելու փորձերը ցույց տվին, որ այդ վերջին տեսակի բակտերիաները ձեռք էին բերում առաջինների ժառանգական հատկանիշները: Վերջապես, այս տարի պարզվեց, որ եթե քաղցկեղի ուռուցքի բջջի միջուկից հանենք մաքուր ԴՆԹ-ն և այն մուծենք կենդանի օրգանիզմի մեջ, ապա սա հիվանդանում է քաղցկեղով: Հաստատապես ապացուցված է նաև, որ բջջի ոչ մի այլ տարր, բացի ԴՆԹ-ից, ի վիճակի չէ հաղորդելու ժառանգականությունը:

Այս առանձնապես ցայտուն երևում է ֆագերի՝ բակտերիաները ոչնչացնող մանրագույն օրգանիզմների բազմացումը դիտելիս: Ֆագը ԴՆԹ-ով լցված սպիտակուցային մի պարկ է սուր ելունով: Ֆագն այդ ելունով «ծակում է» բակտերիայի թաղանթը և նրա մեջ է սրսկում իր ԴՆԹ-ն: Այնուհետև դատարկված պարկը հեռանում է: Կարճ ժամանակից հետո ամբողջ բակտերիան լցվում է անթիվ անհամար նոր ֆագերով: Եվ մեռնում: Նշանակում է, որ հենց ԴՆԹ-ն է ստիպել բակտերիային մշակել ո՛չ միայն ֆագային ԴՆԹ, այլև սպիտակուցային պարկ, այլ կերպ ասած՝ ֆագի ամբողջ օրգանիզմը:

Չափազանց համոզիչ են վերջերս հաստատված այն փաստերը, որոնք վերաբերում են վիրուսներին, նուկլեինյան թթվի ու սպիտակուցի այդ զուգակցումներին: Եթե սպիտակուցից անջատված նուկլեինային թթուն մտցնենք բույսի մեջ, ապա սա կհիվանդանա և շուտով կլցվի վիրուսային մասնիկներով: Նշանակում է, մտցրված նուկլեինային թթվի ժառանգական հատկությունների ազդեցության ներքո բույսն արտադրում է սպիտակուցային թաղանթ ունեցող ամբողջ վիրուսային մասնիկներ, թեպետև ինքը՝ վիրուսի սպիտակուցը, բույսի մեջ չի մտցվել:

Ուրեմն, ժառանգականությունը «նշագրված» է հենց միջուկի քրոմոսոմի ԴՆԹ-ի մոլեկուլներում և հաղորդվում է սերնդից-սերունդ: Եթե հազվագյուտ դեպքերում սեռական բջիջն ունենում է քրոմոսոմների ոչ նորմալ թիվ, ասենք ոչ թե 46 քրոմոսոմ, ինչպես սովորական մարդու մոտ, այլ 45 կամ 47, ապա ծնվում է նորմայից շեղված երեխա: Վերջերս պարզվել է, որ հենց դա է հարուցում այսպես կոչված Դաունի հիվանդությունը՝ ապուշության ամենից ավելի հանդիպող ձևը և մի շարք այլ հիվանդություններ:

Այժմ մաթեմատիկորեն սահմանված են ժառանգական հատկանիշների հաղորդման ճշգրիտ օրենքները: Դրանք ճիշտ կերպով պահպանվում են մեծ թվով սերունդներն ուսումնասիրելիս: Այսպես, օրինակ, կարելի է ճիշտ որոշել, թե երբ և ինչպե՛ս տեղի կունենա այն հիբրիդների պարտադիր բաժանումը ելակետային ձևերի, որոնք ստացվել էին տարբեր ժառանգականություն ունեցող օրգանիզմների տրամախաչումից: Կարելի է որոշել նաև տոհմի մեջ թաքնված ժառանգական բացասական հատկանիշների հանդես գալու հավանականությունը, օրինակ, երկրորդ կամ երրորդ սերնդում արյունակից անձնավորությունների ներընտանիքային տրամախաչման ժամանակ: Այդ թվերը համապատասխանորեն կազմում են 1/16 և 1/64: Բնական է, որ հենց այդ նույն օրենքով էլ դրսևորվում են նաև դրական ժառանգական հատկանիշները: Սակայն ոչ ոք չի ցանկանա դիմել սերնդի մեջ հրեշ ունենալու ռիսկին մի տաղանդի ծնվելու ինչ-որ հավանականության համար: Ի դեպ, հենց այդ պատճառով էլ արգելված են ամուսնությունները մոտիկ ազգականների միջև:

Միևնույն ժամանակ ներընտանիքային տրամախաչումը (ինբրիդինգը) հսկայական նշանակություն ունի զանազան հացաբույսերի բարձր բերքատու սորտեր կամ արժեքավոր մաքուր ցեղային կենդանիներ ստանալիս: Հենց այդ մեթոդով էլ առաջին անգամ ստացվել է բարձր բերքատու հիբրիդային եգիպտացորենը:

Սակայն կա ժառանգականության բարելավման մի այլ ճանապարհ ևս: Չէ որ եթե ժառանգական հատկանիշները «նշագրված» են ԴՆԹ-ում և այդ «նշագրումը» ոչ այլ ինչ է, եթե ոչ առանձին նուկլեոտիդների հերթափոխման մի որոշակի կարգ քրոմոսոմի ԴՆԹ-ի ընդհանուր շղթայի մեջ, ապա հարց է ծագում, արդյոք կարելի՞ է փոխել այդ կարգը: Պարզվում է, որ կարելի է, կամ կոպիտ, օրինակ, ռենտգենյան կամ գամմա ճառագայթմամբ, կամ թե քիմիական ռեագենտների ներգործությամբ, ինչպես դա առաջին անգամ ապացուցեց սովետական հետազոտող Ի. Ռապոպորտը:

Նուկլեոտիդների հերթափոխության կարգի նման փոփոխությունները կոչվում են մուտացիաներ: Հենց դրանք էլ տանում են դեպի նոր, ժառանգաբար հաղորդվող հատկանիշների առաջացում: Ճիշտ է, մենք դեռ չենք սովորել այդ բանը նպատակասլաց կերպով անել: Մի որևէ հացաբույսի բազմաթիվ հատիկների վրա ռենտգենով կամ քիմիական նյութերով ազդելով, մենք գլխավորապես առաջ ենք բերում անօգուտ և հաճախ նույնիսկ վնասակար ժառանգական հատկանիշներ: Բայց, այնուամենայնիվ, հատիկների մի փոքր տոկոսը ձեռք է բերում օգտակար, մեզ հարկավոր հատկություններ: Ցանելով այդ հատիկները, հետագայում կարելի է ջոկել նոր, օգտակար հատկանիշներ ունեցող բույսերը և բազմացնել դրանք սովորական մեթոդներով: Այդպես են ստացվել, օրինակ, գարու ամրացողուն նոր սորտերը, հիվանդությունների (մասնավորապես՝ ժանգի) նկատմամբ դիմացկուն ցորենը և մի քանի այլ սորտեր:





digitised by A.R.A.R.@

Երբ մուտացիայի հետևանքով այնպիսի փոփոխություններ են առաջ գալիս, որոնք չեն խանգարում օրգանիզմին նոր ստացած հատկություններով ապրելու շրջապատող պայմաններում, ապա նա շարունակում է բազմանալ: Հակառակ դեպքում նա կործանվում է: Այդպես է գործում բնական ընտրանքը, որի օրենքները ձևակերպել էր Դարվինը: Մուտացիա և բնական ընտրանք — ահա տարբեր տեսակի բույսերի ու կենդանիների դանդաղ էվոլյուցիայի հիմնական պատճառը:

Ժառանգականության վերաբերյալ ուսմունքը տալիս է բույսերի ազնվացման մի ուղի ևս: Արդեն վաղուց հովտաշուշան բույսից զատված է կոլխիցին ալկալոիդը: Նա կենդանի բջջի վրա ապշեցուցիչ ներգործություն է ունենում: Նրա ազդեցության ներքո բջջի միջուկի մեջ քրոմոսոմների թիվը կրկնապատկվում և եռապատկվում է: Այդ երևույթը կոչվում է պոլիպլոիդիա: Դրա շնորհիվ բույսը դառնում է ավելի դիմացկուն, փարթամ, իսկ որ գլխավորն է, ավելի բարձր բերքատու. նրա պտուղները շատ ավելի խոշոր են լինում: Այդպիսին են, օրինակ, հրնդկացորենի, շաքարի և ձմերուկի վերջերս ստացված պոլիպլոիդիալ սորտերը, որոնցում շաքարի պարունակությունը 20 տոկոսով ավելի է, քան սովորական սորտերում, իսկ բերքատվությունը բարձր է 70 տոկոսով:

Այսպես ստացվեց ԴՆԹ-ի և բջջի միջուկի քրոմոսոմների դերի մեկ ապացույց ևս, որոնք, ինչպես արդեն ասվեց, թելադրում են օրգանիզմի զարգացման պլանը:

Իսկ ինչպե՞ս են անում նրանք այդ բանը: Չէ որ ամեն մի օրգանիզմ կազմված է գլխավորապես սպիտակուցներից: Դրանցից են կառուցված մեր բոլոր օրգանները, մկանները, արյունը: Դրանց օգնությամբ է իրագործվում նյութերի փոխանակությունը: Վերջապես, անգամ երկվորյակների արտաքին տարբերությունն ու նմանությունը պայմանավորված է նրանց օրգանիզմների սպիտակուցների տարբերությամբ: Իսկ օրգանիզմի մեջ քրոմոսոմները շատ քիչ են: Համեմատության համար ասենք, որ չափահաս մարդու քրոմոսոմների ընդհանուր կշիռը մեկ գրամից շատ ավելի պակաս է: Իսկ սպիտակուցների գոյացումը և օրգանիզմի աճը ինչպե՞ս են կապված քրոմոսոմների գործունեության հետ:

Այժմ ստույգ պարզված է, որ ամեն մի օրգանիզմի սպիտակուցների կազմությունը որոշվում է բջջի միջուկի քրոմոսոմների ԴՆԹ-ի կազմությամբ:

Քրոմոսոմներում «նշագրված» է հենց սպիտակուցների ստեղծման ու կազմության պլանը:

Ամեն մի սպիտակուցային սնունդ օրգանիզմի սկզբում քայքայվում է ֆերմենտների ազդեցության տակ և վերածվում տարբեր ամինաթթուների, որոնցից նորից կազմավորվում են այն սպիտակուցները, որոնք հարկավոր են տվյալ օրգանիզմին: Նոր սպիտակուցները սննդի սպիտակուցներից տարբերվում են նրանով, որ նրանց մեջ ամինաթթուները մեկը մյուսի հետ շղթայակցված են արդեն այլ կարգով, որը որոշվում է օղակների շղթայակցման կարգով ԴՆԹ-ի մոլեկուլներում: Այսպիսով, ԴՆԹ-ի մոլեկուլները օրգանիզմի մեջ ծառայում են որպես մի տրաֆարետ, որի համաձայն կազմակերպվում են սպիտակուցները: Բավական է օղակները տեղափոխելով կամ թե դրանցից թեկուզ մեկը հեռացնելով որևէ մի տեղ խախտել այդ տրաֆարետի կազմությունը և դա իսկույն կանդրադառնա կազմավորող սպիտակուցի կազմության վրա: Ահա տրաֆարետի այդպիսի փոփոխությունները, այլ կերպ ասած՝ մուտացիաներն են, որոնք երբեմն տեղի են ունենում ինքնաբերաբար արտաքին պայմանների ազդեցության ներքո, առաջացնում կամ նոր օգտակար հատկանիշներ, կամ՝ ժառանգական հիվանդություններ:

Այդպիսի հիվանդությունների օրինակ է հանդիսանում մանգաղաձևաբջջային անեմիան, որ ուսումնասիրել է Լ. Պոլինգը: Այդ մուտացիայի հետևանքով փոխված տրաֆարետի վրա գոյանում է ոչ թե սովորական սպիտակուց, որը հատուկ է թթվածին փոխադրող արյան կարմիր գնդիկներին, այլ փոփոխված կառուցվածք ունեցող սպիտակուց, որի մեջ ամինաթթուներից մեկը փոխարինված է մյուսով: Նա հեշտությամբ է բյուրեղանում: Իսկ դրա հետևանքն էլ լինում է արյան կարմիր գնդիկների պայթումը և, վերջին հաշվով, ամենածանր տեսակի սակավարյունությունը, որը մեծ մասամբ վերջանում է մահով:

Այժմ մենք շատ մոտ ենք ժառանգականության նպատակասլաց փոփոխման հնարավորությանը: Եվ հեռու չէ այն ժամանակը, երբ ժառանգականությունը կփոխվի մեր ցանկությամբ: Այդ փոփոխություններից մի քանիսն արդեն իրագործվում են: Այսպես, ռենտգենի և քիմիական որոշ նյութերի ներգործությամբ ստեղծված են միկրոօրգանիզմների նոր «ցեղեր», որոնք հարյուր անգամ ավելի արագ են արտադրում, օրինակ, պենիցիլինը, ստրեպտոմիցինը և մյուս անտիբիոտիկները, քան ելակետային բնական միկրոօրգանիզմները, ստեղծված են հացաբույսերի նոր օգտակար տիպեր:

Այժմ վերադառնանք ծերության պրոբլեմին: Չէ որ մենք ասացինք, որ բջիջը բաժանվելիս



երիտասարդանում է, և այդ տեսակետից կյանքը պետք է որ անմահ ու հավերժ երիտասարդ լինի: Իսկ որտեղի՞ց է գալիս ծերությունը:

Հիմք կա կարծելու, որ ծերությունը քրոմոսոմների ԴՆԹ-ի կազմության մեջ եղած բազմաթիվ մանր պատահական փոփոխությունների հետևանք է: Դրանցից յուրաքանչյուրը պրակտիկորեն աննկատելի է, բայց կուտակվելով կյանքի երկար տարիների ընթացքում, դրանք վերջին հաշվով հարուցում են նյութերի փոխանակության անշտկելի խախտումներ, որոնք տանում են դեպի ծերություն և մահ:

Այդ փոփոխությունները տեղի են ունենում արտաքին պայմանների և, մասնավորապես, տիեզերական ճառագայթման ազդեցության տակ, ճառագայթում, որը ներգործում է ճիշտ այնպես, ինչպես ռենտգենի ճառագայթները: Բնական է, որ մթնոլորտի ռադիոակտիվության ընդհանուր ֆոնի ուժեղացման հետևանքով կուժեղանան և հաճախակի կդառնան վերակազմությունների այն երևույթները, որոնք հանգեցնում են քաղցկեղի, ժառանգական հիվանդությունների և ծերության: Ահա թե ինչու մարդկությունը բողոքում է ատոմային զենքի արտադրության անմիտ հանցագործ մրցավազքի և այդ զենքի փորձարկումների դեմ:

Արդի գենետիկան այնքան նշանակալի հաջողություններ է ձեռք բերել, որ դրանց նշանակությունը մարդկության համար կարելի է համեմատել միայն արդի ֆիզիկայի հաջողությունների հետ: Դա հնարավոր է դարձել միայն բիոլոգների, ֆիզիկոսների և, հատկապես, քիմիկոսների համատեղ սերտ աշխատանքի շնորհիվ:

Ժառանգականության նյութական կրողների հայտաբերումը և ուսումնասիրությունը ունի նաև փիլիսոփայական խոր նշանակություն: Իդեալիստական պատկերացումները, ինչպես հայտնի է, միշտ էլ ապրում են այնտեղ, որտեղ գիտությունը դեռ չի թափանցել: Այժմ վիտալիզմը դուրս է մղված մի շատ կարևոր տեղամասից ևս: «Կենսական ուժի» գաղտնիքը դադարել է գոյություն ունենալուց:

«Известия», 1962 р., № 146

---

Լենինականում, Հոկտեմբերյանում, Ապարանում, Երևանի Շահումյանի շրջանում, Բասարգեչարում, Աբովյանում և ռեսպուբլիկայի մյուս շրջաններում անցկացված մեր ընթերցողների կոնֆերանսներում պարտիական, սովետական, տնտեսական աշխատողներից, ինտելիգենցիայի ներկայացուցիչներից և սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներից մի շարք ընկերներ ցանկություն հայտնեցին ամսագրում սիստեմատիկաբար նյութեր տպագրել գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների և արվեստի ու գրականության հանգուցային հարցերի վերաբերյալ:

Ընդառաջելով ընթերցողների ցանկությանը, խմբագրական կոլեգիան որոշեց ամսագրում բացել գիտության և արվեստի բաժին, ուր պարբերաբար նյութեր կտպագրվեն ընթերցողներին հետաքրքրող հարցերի շուրջ:

Այդ նպատակով ամսագրի նախորդ համարում տպագրել ենք ակադեմիկոս Բերգի և սույն համարում՝ ակադեմիկոս Կնունյանցի հոդվածները, որոնց առթիվ կցանկանայինք ստանալ մեր ընթերցողների կարծիքը:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

digitised by A.R.A.R.@

# Մեր օրերի ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ԳՅՈՒՂԱԿԱՆ ԲԺԻՇԿԸ



Յոթ տարի առաջ էր։ Արագածյանի անջրդի հողերի վրա ստեղծված Արմաշի սովխոզում նոր էին բողբոջում կյանքի ծիլերը, երբ այնտեղ աշխատանքի անցավ նորավարտ բժիշկ Արսեն Հայրյանը։ Սկզբում նրա համար ամեն ինչ դժվար էր. չուներ փորձ, անծանոթ էր նոր միջավայրը։ Իսկ գործը շատ էր ու շատ. վատ էր գյուղի սանիտարական վիճակը, մարդիկ հաճախ էին հիվանդանում, մանավանդ՝ երեխաները։

Ժողովրդի հանդեպ ունեցած պարտքի իր գիտակցությամբ նա երիտասարդական ավյունով լծվեց գործի։ Օրվա տարբեր ժամերին բժշկին կարելի էր տեսնել բնակարաններում, դաշտում, դպրոցում. ուշի-ուշով նա քննում էր հիվանդներին, դարմանում նրանց ցավերը։ Բնակիչները սիրեցին իրենց ջանասեր ու հոգատար բժշկին։

Շուտով երիտասարդ մասնագետի առջև բացվեց հասարակական գործունեության լայն ասպարեզ՝ ընտրվեց գյուղական Սովետի դեպուտատ։ Նա հանդես եկավ գյուղը բարեկարգելու և ծառազարդելու նախաձեռնությամբ։ Բժիշկը դարձավ այդ մեծ գործերի կազմակերպիչը, ոգին։ Բարեկարգվեցին գյուղի բակերը, փողոցներում օրորվեցին ճկուն ու ջահել տնկիները։

Գյուղին անհրաժեշտ էր նոր, լավորակ խմելու ջուր։ Կատարելով համապատասխան անալիզներ՝ բժիշկը եկել էր այն եզրակացության, որ ստամոքսա-աղիքային հիվանդությունների տարածման պատճառը խմելու անորակ ջուրն է։ Բժիշկ Հայրյանը եղավ ռեսպուբլիկական կազմակերպություններում, ապացուցեց ու համոզեց, որ անհրաժեշտ է ջրմուղ կառուցել, իսկ երբ հարցը դրականորեն լուծվեց, կոչ արեց համագյուղացիներին՝ դուրս գալ աշխատանքի։

Նոր ջրմուղը ո՛չ միայն սառնորակ ջուր տվեց Արմաշին, այլև ընդմիշտ վերացրեց ստամոքսա-աղիքային վարակիչ հիվանդությունների առաջացման պատճառը։ Իսկ երեկոները, երբ գյուղը հանգստանում էր, հոգնած բժշկի գլխում ծնունդ էին առնում նոր ծրագրեր ու մտահղացումներ, նա ընկլսում էր մտմտալ դրանց կենսագործման ուղիների մասին։

... Այժմ Արմաշը հաճախ է հյուրընկալում Մոսկվայից, Ուկրաինայից, եղբայրական մյուս ռեսպուբլիկաներից եկած ընկերների։ Արմաշցիների համար արդեն սովորական է դարձել գյուղի փողոցներում տեսնել տարբեր տեղերից եկած և տարբեր ազգի մարդկանց, որոնք հետաքրքրվում են իրենց կենցաղով, մտնում բակերը, հարցուփորձ անում գյուղի սանիտարական բարեկարգման և հիգիենիկ միջոցառումների մասին, կարծիքներ փոխանակում։

Արմաշն այժմ հայտնի է դարձել մեր երկրի տարբեր վայրերում, առողջապահության գործի կազմակերպիչների շրջաններում։ Այստեղ, Սովետական Միության մեջ առաջին անգամ բացվել է սանիտարական լուսավորության թանգարան։ Վերջինիս համար գյուղում կառուցվել է հարմարավետ շենք, որի ընդարձակ դահլիճները, հաշենք... ռուստ էքսպոնատները պատիվ կբերեն նույնիսկ մեծ քաղաքներին։

Թանգարանն օգնում է գյուղում արմատավորելու առողջ կենցաղ, սանիտարական կուլտուրա։ Այստեղ հաճախ են լինում Վեդու շրջանի կոլտնտեսականները, ուսումնասիրում այն ամենը, ինչ անհրաժեշտ է մարդու հասարակական և անձնական հիգիենայի ճիշտ պահպանման համար։ Իսկ երբ գյուղի վրա իջնում է երեկո, մարդիկ շտապում են թանգարան՝ դիտելու բժշկական որևէ կինոնկար կամ լսելու Երևանից եկած գիտնականի դասախոսությունը։

Ծանոթանում ես կուլտուրական այս հրաշալի օջախի աշխատանքներին և ամեն ինչում տեսնում այս անհանգիստ մարդու ամենատես աչքն ու ամեն ինչի հասնող ձեռքը։

Արմաշի բժշկի անձնվեր աշխատանքի մասին սկսեցին գովեստով խոսել ամենուրեք։ Նրա աշխատանքի մեթոդներն ուսումնասիրվեցին Մոսկվայի Սեմաշկոյի անվան բժշկության պատմության ինստիտուտի կողմից և լայնորեն տարածվեցին Միության գյուղական բուժհիմնարկներում։ Մոսկվայում և Երևանում հրատարակվեցին բժիշկ Ա. Հայրյանի աշխատությունները։ Նրա անունն այժմ հաճախ է հնչում բժիշկների համամիութենական կոնֆերանսներում, գիտական սեսիաներում։ Վերջերս դոկումենտալ ֆիլմերի Մոսկվայի կինոստուդիան ժուռնալիստ Եվգենի Կրիգերի սցենարով մի կինոնկար է նկարահանել բժիշկ Հայրյանի մասին։

Անցյալ տարի Վեդու շրջանի կոմունիստները երիտասարդ բժշկին ընտրեցին ՀԿՊ XXII համագումարի պատգամավոր։

Ծանոթանում ես այս էնտուզիաստ մարդու գործերին և հիանում ժողովրդին անձնվիրաբար ծառայող սովետական երիտասարդով, համոզվում, որ մեր օրերում գիտական միտքը կարող է փայլատակել գյուղական համեստ բժշկի ամենօրյա պրակտիկ գործերի ու հոգսերի հորձանուտում։

Աշխարհով մեկ հայտնի են անտիբիոտիկները՝ ստրեպտոմիցինը, պենիցիլինը, լևոմիցիտինը և այլն։ Այդ դեղորայքը իսկական հեղաշրջում մտցրին բժշկության մեջ։ Բայց, ինչպես ամեն մի զորեղ միջոց, այնպես էլ սրանք կարող են ապաքինել հիվանդությունը, եթե ճիշտ օգտագործվեն։

Տարբեր երկրներում ավելի հաճախ սկսեցին խոսել այն մասին, որ անտիբիոտիկները, ոչ չափավոր ու անհարկի գործածելու դեպքում, առաջացնում են ավելի ծանր երևույթներ, քան այն հիվանդությունները, որոնց դեմ ուղղված են դրանք։ Եվ ահա, գիտական ուսում-





digitised by A.R.A.R.@

նասիրությունների համար գյուղի աննպաստ պայմաններում, բժիշկ Հայրյանը խիզախ գործեր կատարեց: Ի՞նչ փույթ, որ գյուղում չկային հարուստ լաբորատորիա, քիմիական նյութեր, բարդ սարքավորումներ: Դրանց փոխարինում էին երիտասարդ բժշկի պայծառ միտքը, հիվանդության դեպքերի ամենօրյա դիտարկումները, համառ ուսումնասիրությունները: Եվ բժիշկը հանգեց այն եզրակացության, որ կանդիտամիկոզ հիվանդության ծանր երևույթները շատ հաճախ կապված են անտիբիոտիկների սխալ գործածության հետ: Ինչ նշանակություն ունի այն, որ դրանց գործածման սխեման հաստատել են նշանավոր գիտնականները: Իսկ կյա՞նքը, բժշկի ամենօրյա պրակտիկա՞ն. չէ՞ որ դրանք այլ հետևության էին հանգեցնում: Ուրեմն, պետք է խիզախել, գտնել բացասական գործոնների մեխանիզմը:

Հայրյանը համոզվեց, որ սխալվում են այն գիտնականները որոնք առաջարկում են ստրեպտոմիցին և պենիցիլին ներարկել անընդմեջ՝ մինչև ջերմության իջնելը: Բժիշկը փորձեց պակասեցնել պենիցիլինի դեղաչափը, իսկ հետո դադարեցրեց անընդմեջ սրսկումները, և ... կատարվեց անսպասելին. հիվանդի՝ մինչև 40 աստիճանի հասնող ջերմությունն իջավ միանգամից, նրա վիճակը թեթևացավ: Ահա՛ թե ինչ: Ուրեմն նրա մոտ վաղուց են անցել ախտաբանական երևույթները, իսկ ջերմաստիճանը շարունակում է բարձր մնալ պենիցիլինից առաջացած կանդիտամիկոզ հիվանդության հետևանքով: Բայց միայն դիտարկումներով հեռու չես գնա, անհրաժեշտ էր դրանք հաստատել բակտերիոլոգիական և սերիոլոգիկ ստուգումներով: Մինչև այդ անտիբիոտիկների բացարձակ պիտանիության մասին պաշտպանվել էին բազաթիվ դիսերտացիաներ, գրվել բազմաթիվ գրքեր, որտեղ խոսք անգամ չկար դրանց վնասակար հատկությունների մասին: Եվ ինչ, գյուղում նստած մի սկսնակ բժիշկ ուղղում է, շտկում նրանց սխալը, ասելով՝ «զգույշ գործածեցեք անտիբիոտիկները, դրանք անվնաս չեն»:

Շատերին դուր չեկավ «աշակերտի»՝ ուսուցչին դիտողություն անելու այդ հավակնությունը: Բայց երիտասարդ բժշկին քաջալերում էին Մոսկվայում և Երևանում աշխատող բանիմաց գիտնականները, մարդիկ, որոնց համար էականը ոչ թե նոր խոսք ասողի տարիքն ու դիրքն է, այլ գիտական մտքի ճշտությունն ու խիզախումը:

... Երևանի բժշկական ինստիտուտի գիտական խորհրդի քննարկմանը ներկայացվեց Արսեն Հայրյանի դիսերտացիոն աշխատանքը՝ նվիրված անտիբիոտիկների ճիշտ օգտագործմանը, դրանց վնասակար հատկությունների ուսումնասիրմանը: Դիսերտացիային կցված էին Մոսկվայի և Երևանի ականավոր գիտնականների դրական կարծիքները: Հեղինակն առաջարկում էր այդ դեղորայքի կիրառման իր սխեման, որն արդեն կիրառվում է Միության տարբեր բուժհիմնարկներում:

Զուր էին ոմանք կարծում, թե բժշկական գիտությունների թեկնածու դառնալուց հետո կոմունիստ Հայրյանը «կչվի» գյուղից: Նա այժմ էլ Արմաշում է և ղեկավարում է գյուղական փոքրիկ հիվանդանոցը:

...Մենք նրան հանդիպեցինք նորակառույց շենքի մոտ, շինարարների հետ զրուցելիս:

— Եվս մի քանի շաբաթ, և նոր հիվանդանոցը շահագործման կհանձնվի,— եղավ նրա առաջին խոսքը: Իսկ քիչ անց նա ոգևորված պատմում էր իր նոր մտահղացումների մասին:

Տեսնե՛ք, թե այժմ ինչ խիզախ միտք է տանջում պրպտող և անհանգիստ բնավորության տեր այս բժշկին:

Մարդու միզապարկում առաջացած քարերը հեռացնելու համար կատարվում է շատ բարդ վիրահատություն՝ կտրվում է որովայնը, ապա՝ միզապարկը: Դժվար և տանջող միջոցառում: Պատկերացրե՛ք այն հիվանդների վիճակը, որոնց օրգանիզմը հակում ունի վիրահատումից հետո էլ միզապարկի քարեր սինթեզելու... Բայց թող խոսի ինքը՝ Արսեն Հայրյանը:

— Զարմանալի հատկություն ունի ստամոքսահյութը. անգամ պատահաբար կուլ տված ոսկորը հալվում է ստամոքսում և մարսվում: Փորձերը ցույց են տվել, որ միզապարկից անջատված քարը հալվում է ստամոքսահյութից: Առավել ուժեղ է ներգործում շան ստամոքսահյութը, որով և բացատրվում է այն, որ նրանք ոսկորներ են ուտում և մարսում: Իսկ ի՞նչ կլինի, եթե միզապարկի մեջ ստամոքսահյութ մտցնենք, չե՞ն հալվի արդյոք այնտեղ առաջացած քարերը: Չէ՞ որ դրանով հիվանդին կազատենք բարդ վիրահատությունից:

Հայրյանը կկոցում է աչքերը և ցածրաձայն ավելացնում.

— Ուզում եմ ձեզ մի գաղտնիք հայտնել: Կենդանիների վրա արդեն փորձեր եմ կատարել: Նրանց միզափամփուշտն եմ մտցրել վիրահատության ժամանակ մարդու միզապարկից հեռացված քարը, կարել կտրվածքը: Վերքը լավանալուց հետո այնտեղ ներարկել եմ ստամոքսահյութ, և, պատկերացնո՞ւմ եք, քարերը հալվել են:

Ես չեմ կարողանում թաքցնել հիացմունքս և, մոռանալով, որ նրա հայտնածը դեռևս «գաղտնիք է», այս հրաշալի մարդու անհանգիստ հոգում բողբոջող ազնիվ մի իղձ, անզուսպ հիացմունքով գրկում եմ նրա ուսերը և բացականչում.

— Դե՛, դու խիզախ գիտնական ես, իմ գյուղական բժիշկ:

ՌԱՖԱՅԵԼ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ
Վեդու շրջան, Արմաշ

---

**ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1960-1980 Թ.Թ.**






digitised by A.R.A.R.@

գում, որոնք մերթ աղոտանում էին ու սպառնում հանգչել, մերթ բեժանում էին փայտ ավելացրած խարույկի նըրման: Շատ հաճախ լուսաբացը նրան գտնում էր թղթերի վրա հակված:

Այս որոնումների մեջ էր նա, երբ օգնության եկավ ավագ ընկերը՝ Արտավազդ Դավթյանը: Գործը հեշտացավ: Տեխնիկական բարդ հաշվարկումները ճշտվեցին, ծրագրերը դարձան պարզ ու որոշակի և կամաց-կամաց թղթի վրա երևաց ապագա սարքի ուրվագիծը: Գյուտարարության ու նորարարական առաջարկների բյուրոյում մասնագետ մարդիկ ծանոթացան գըծագրերին ու հաշվարկներին ու եկան այն համոզման, որ առաջարկը շատ օգտակար է և հանձնարարեցին ներդընել արտադրության մեջ:

Ֆաբրիկայում ծանր մեքենաների ագրեգատների, էլեկտրաշարժիչների վերանորոգման կամ նորերի տեղադրըման աշխատանքները կատարվում էին ձեռքով, որի ժամանակ ֆաբրիկան ըզգալի պարապուրդ էր տալիս: Մենեդյանի ու Դավթյանի պատրաստած սարքը փոխեց վիճակը:

Պղնձի կոնցենտրատը ֆիլտրից անջատվում էր ձեռքով, իսկ երկու բանվորներ այն վագոնետկաներով տեղափոխում էին պահեստ: Թևավորված առաջին հաջողությամբ, նորարարները մտածեցին այդ դժվարությունը ևս հաղթահարել: Նորից անցան որոնումներով ու տքնությամբ լի օրեր, մինչև ծնվեց մի նոր հարմարանք՝ փոխադրիչ ժապավենը, որն էլեկտրական կռնակի սեղմումով կատարում էր նախկին աշխատանքը՝ տնտեսելով հարյուրավոր բանվորական ժամեր, հազարավոր ռուբլիներ:

Արփիար Մենեդյանը Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատում միակ նորարարը չէ: Վերջին երեք տարում այստեղ ընդունվել ու արտադրության մեջ ներդրվել է 144 առաջարկ, ֆինանսիստները այդ կոչում են 353 հազար ռուբլու տնտեսում: Դա մի աղյուս է կոմունիզմի գեղեցիկ շենքի վրա:

Մ. ԱՎՉՅԱՆ
Սիսիան

## ԳԻՐՔԸ ՀԱՍՑՆԵԼ ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

Գրադարանի շենքի անհարմարության պատճառով երկար ժամանակ չէինք կարողանում ինչպես հարկն է շրջանառության մեջ դնել քաղաքական գրականության մեր ունեցած հարուստ ֆոնդը, բավարարել ընթերցողների աճող պահանջը: Որոշեցինք գրքերը դուրս բերել գրապահոցից և հնարավորության սահմաններում այն ցուցադրել: Ընթերցասրահում կազմակերպեցինք մի քանի բաց դարակներ, ուր տեղադրվեցին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների առանձին աշխատությունները, ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, արդի քաղաքականությանը վերաբերող առանձին գրքեր, ինչպես և տեղեկատու ցանկեր, կատալոգներ, նոր գրքերի ցուցակներ և այլն: Միաժամանակ գրադարանի աշխատողներ Ժ. Բեգլարյանի և Լ. Հարությունյանի ջանքերով քաղաքի հեռավոր թաղամասերում կազմակերպվեցին շրջիկ գրադարաններ:

Քաղաքական գրականության պրոպագանդման նպատակով գրադարանում պարբերաբար անցկացնում ենք դասախոսություններ ու զրույցներ, դասախոսների հետ հարց ու պատասխանի երեկոներ, գրքերի քննարկումներ: Այդ ամենը հնարավորություն տվեց մեծապես ավելացնելու քաղաքական գրականության ընթերցողների թիվը:

Ն. ՀՈՎՍԵՓՅԱՆ
Գորիսի քաղաքային գրադարանի վարիչ

## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ.— ՍՄԿՊ նոր կանոնադրության մեջ ասված է, որ պարտիայի շարքերն ընդունվողը ներկայացնում է ՍՄԿՊ երեք անդամների երաշխավորություն, որոնք երաշխավորվողներին ճանաչում են առնվազն մեկ տարվա համատեղ արտադրական կամ հասարակական աշխատանքից: Ի՞նչ է նշանակում համատեղ արտադրական և համատեղ հասարակական աշխատանք:

Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՀԿՊ Եղեգնաձորի շրջկոմի
քաղլուսկաբինետի վարիչ

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ամենից առաջ դուք ճիշտ չեք բանաձևում ՍՄԿՊ Կանոնադրության այն կետը, ուր ասված է, թե «պարտիայի անդամ ընդունվողները ներկայացնում են ՍՄԿՊ երեք անդամների երաշխավորություն, որոնք ունեն առնվազն երեք տարվա պարտիական ստաժ և երաշխավորվողներին ճանաչում են առնվազն մեկ տարվա համատեղ արտադրական ու հասարակական աշխատանքից»:

Ինչպես կարելի է նկատել, պարտիայի անդամը ՍՄԿՊ շարքերն ընդունվողին պետք է ճանաչի «համատեղ արտադրական ու հասարակական աշխատանքից», և ոչ թե «համատեղ արտադրական կամ հասարակական աշխատանքից», ինչպես գրում եք դուք:

Պարտիայի անդամ են ընդունվում գիտակից, ակտիվ և կոմունիզմի գործին նվիրված սովետական քաղաքացիները: ՍՄԿՊ նոր Ծրագրում ասված է, որ կոմունիստը պարտավոր է արտադրության մեջ, հասարակական և անձնական կյանքում իր ամբողջ վարքագծով ցույց տալ կոմունիստական հասարակության զարգացման համար մղված պայքարի լավագույն օրինակներ: Դրան համապատասխան էլ որոշ փոփոխություններ է մտցվել ՍՄԿՊ նոր Կանոնադրության մեջ: Եթե նախկին Կանոնադրությամբ պահանջվում էր, որ երաշխավորողը պարտիայի շարքերն ընդունվողին իմանա միայն համատեղ աշխատանքից, ապա նոր Կանոնադրությունը նրանից պահանջում է երաշխավորվողին ճանաչել ո՛չ միայն համատեղ արտադրական, այլև համատեղ հասարակական աշխատանքից:

Դա անմիջականորեն բխում է արդի էտապում կոմունիստի կոչումը բարձրացնելու անհրաժեշտությունից:

Համատեղ արտադրական աշխատանքն այն է, երբ մարդիկ միասին, կողք կողքի աշխատում են միևնույն կոլեկտիվում և միացյալ ուժերով լուծում են կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրները: Բայց բավական չէ մարդուն ճանաչել միայն արտադրական աշխատանքից, իմանալ, թե նա ինչպես է



digitised by A.R.A.R.@

*իրեն դրսևորում արտադրության մեջ, պայքարում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար։ Ճանաչել մարդուն ըստ հասարակական աշխատանքի, նշանակում է նրան գիտենալ ո՛չ միայն պաշտոնական առօրյա գործունեության ընթացքում, այլև հանրօգուտ նշանակություն ունեցող աշխատանքում, որը նա կատարում է պարտիական, քաղաքացիական և բարոյական շարժառիթներից դրդված։*

ՀԱՐՑ.— Խնդրում եմ պարզաբանել, թե ՍՍՌՄ-ն ինչ պայմաններով է վարկեր տրամադրում ուրիշ երկրների։

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ
Աշտարակի շրջանի Ագարակ գյուղի
ութամյա դպրոցի ուսուցիչ

*ՊԱՏԱՍԽԱՆ.—Սոցիալիստական երկրների վարկային քաղաքականությունն արմատապես տարբերվում է կապիտալիստական երկրների վարկային քաղաքականությունից։ Իմպերիալիստական հզոր տերությունների համար վարկերը զորեղ միջոց են փոխառու երկրներին, առանձնապես տնտեսապես թույլ զարգացած երկրներին կողոպտելու և դրանց էկոնոմիկան իրենց ենթարկելու համար։ Ուստի վարկերն այստեղ տրամադրվում են քաղաքական ու տնտեսական որոշակի պայմաններով, որոնք մեծ շահույթներ են բերում վարկատու երկրներին։ Օրինակ, վերջին երկու տարվա ընթացքում ԱՄՆ-ը Լատինական Ամերիկայի երկրներին տրամադրել է 603 մլն դոլարի վարկ։ Սակայն նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ի կորպորացիաները որպես իրենց կապիտալ ներդրումների շահույթ այդ երկրներից կորզել են 1.600 մլն դոլար, կամ իրենց տվածից 14 անգամ ավելի։ Կապիտալիստական երկրների վարկերը շահույթ ստանալու լրացուցիչ աղբյուր են. դրանց նպատակը մետրոպոլիայում չվաճառվող ապրանքները, հատկապես, անձնական սպառման առարկաներր և գործածությունից հանված զենքի հնացած տեսակները մոնոպոլ բարձր գներով այդ երկրներում վաճառելն է։ Եվ, պատահական չէ, որ կապիտալիստական երկրներում վարկերի դիմաց գանձվող տոկոսը չափազանց բարձր է (վարկերի միջին տոկոսային կոպարը տատանվում է 4,5—6 տոկոսի սահմաններում)։ Միաժամանակ կապիտալիստական երկրների վարկային քաղաքականությունը հետապնդում է ռազմաստրատեգիական նպատակներ։ Դրա միջոցով վարկավորվող երկրները ներգրավվում են ագրեսիվ ռազմական բլոկների մեջ, նրանց տերիտորիայում հիմնվում են ռազմական բազաներ հրթիռային ու միջուկային զենքի հրապարակներ, հետախուզական կենտրոններ, որոնք ուղղված են ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Իմպերիալիստական տերությունների վարկային քաղաքականությունը, վերջին հաշվով, նոր պատերազմի նախապատրաստման և ժողովուրդների ստրկացման լծակներից մեկն է։*

*ՍՍՌՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները նույնպես վարկային օգնություն են ցույց տալիս թույլ զարգացած ասիական և աֆրիկյան երկրներին, սակայն առանց քաղաքական կամ տնտեսական հատուկ պայմանների։ Այդ վարկերի նպատակն է՝ գաղութային լծից ազատագրված երկրներին օգնել անկախ ազգային էկոնոմիկայի ստեղծման ու զարգացման գործում։ Օրինակ, Բհիլայում (Հնդկաստան) սովետական կազմակերպությունների օգնությամբ կառուցվող մետալուրգիական գործարանի սարքավորման ու մյուս ծախսերը հատուցելու համար ՍՍՌՄ-ը Հնդկաստանին տարեկան 2,5 տոկոսով վարկ տրամադրեց, որը պետք է վճարվի ռուպիներով (հնդկական դրամական միավոր), 12 տարվա ընթացքում։ Ետ վերադարձվող վարկը ՍՍՌՄ-ը օգտագործելու է հնդկական ապրանքներ գնելու համար։ Նշանակում է, գործարանի կառուցումը Հնդկաստանից վալյուտային ծախսեր չի պահանջելու։*

*Հնդկաստանը վարկ է վերցնում նաև Վերակառուցման ու զարգացման Միջազգային բանկից, որի անդամն է ինքը։ Բայց այն վերցնում է դոլարներով՝ տարեկան 5 տոկոսով։ Այստեղից ակներև են դառնում սովետական վարկի ձեռնտու պայմանները։*

*Նման ձեռնտու պայմաններով (2—3 տոկոսի հաշվով), ՍՍՌՄ-ը վարկ է տրամադրել նաև Ֆինլանդիային, Իրաքին, Ինդոնեզիային, աֆրիկյան մի քանի երկրների (Գանա, Գվինեա և այլն)։ Մինչև 1961 թվականը ՍՍՌՄ-ը անկախության ուղին թևակոխած երկրներին տրամադրել է 2,4 միլիարդ ռուբլու (նոր դրամով) երկարաժամկետ վարկեր։*

*Այժմ ՍՍՌՄ-ի կողմից սոցիալիստական երկրներին վարկ տրամադրելու պայմանների մասին։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրները գտնվում են տնտեսական սերտ համագործակցության մեջ, որի գլխավոր ձևերից մեկն էլ փոխադարձ վարկավորումն է։ ՍՍՌՄ-ը սոցիալիստական երկրներին վարկեր է տրամադրում նրանց համար բացառիկ արտոնյալ և ամենանպաստավոր պայմաններով, սովորաբար տարեկան 1—2 տոկոսի հաշվով, ընդ որում, փոխառու երկրներն առաջին տարիներին հաճախ ազատվում են տոկոս վճարելուց։*

*Սոցիալիստական երկրների վարկային հարաբերություններում տոկոսի անհրաժեշտությունը թելադրվում է այն հանգամանքով, որ վարկատու երկրները որոշ ժամկետով նյութական կամ դրամական (ոսկի) միջոցներ է տրամադրում, որոնց օգտագործման շնորհիվ մեծանում է փոխառու երկրների արտադրական ծավալը, ստեղծվում են նյութական նոր, լրացուցիչ արժեքներ։ Դրա փոխարեն վարկային միջոցները որոշ ժամկետով սեփական շրջանառությունից հանելու և այդ երկրներին տրամադրելու հետևանքով վարկատու երկրի կատարած ծախսերը փոխհատուցվում են վարկի դիմաց ստացվող տոկոսներով։*

*Վարկերն օգտագործվում են արտադրության միջոցներ, գլխավորապես մեքենաներ ու կոմպլեքսային սարքավորում, ինչպես նաև անհրաժեշտ սպառման առարկաներ գնելու համար։ Իսկ փոխառու երկրները վարկերը և տոկոսները մարում են գլխավորապես տվյալ երկրի արտահանման համար բնորոշ, նպաստավոր գներով հաշվարկված ապրանքներով։*

*Այսպիսով, ՍՍՌՄ-ը վարկ է տրամադրում ինչպես սոցիալիստական, այնպես էլ տնտեսապես թույլ զարգացած կապիտալիստական և գաղութային լծից ազատագրված երկրներին՝ ցածր տոկոսով։ Ընդ որում, միշտ էլ ՍՍՌՄ-ի կողմից տրամադրվող վարկի պայմանները փոխառու երկրների համար ձեռնտու են և առավել նպաստավոր։ Դրանք ոչ մի կերպ չի կարելի համեմատել կապիտալիստական վարկային հարաբերությունների հետ։*



digitised by A.R.A.R.@

Շրջկոմի բյուրոն կոնկրետ որոշում ընդունեց վերը նշված թերությունների վերացման համար։ Բյուրոն պարտիական կազմակերպությունների քարտուղարներից պահանջեց վերջ տալ ժողովների նախապատրաստման ու անցկացման նկատմամբ իրենց անտարբեր վերաբերմունքին, կատարելով ՍՄԿՊ Կանոնադրության պահանջները սկզբնական պարտկազմակերպությունների ժողովների գումարման մասին։

## ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՎԱ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՀԱՐՑԸ ՇՐՋԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅՈՒՄ

Դպրոցների 1962—1963 ուսումնական տարվա նախապատրաստումը լուրջ գործ է։ Քննության առնելով այդ հարցը, ՀԿՊ Կիրովականի շրջկոմի բյուրոն նշեց, որ մի շարք գյուղերում անհրաժեշտ աշխատանք չի տարվում դպրոցական շենքերը ժամանակին նորոգելու, դասարանները կոմպլեկտավորելու, դասական ու գրենական պիտույքներ, վառելիք և պահանջվող քանակությամբ գույք ձեռք բերելու ուղղությամբ։ Շրջանի դպրոցներում դեռևս զգացվում է մանկավարժական կադրերի, հատկապես, ռուսաց և օտար լեզուների, ֆիզիկայի, մաթեմատիկայի, աշխատանքի ուսուցման ուսուցիչների կարիք։

Շրջկոմի բյուրոն սկզբնական պարտիական կազմակերպություններին, գյուղական և ավանային Սովետների գործկոմների նախագահներին, դպրոցների դիրեկտորներին և ժողովրդական կրթության բաժնին հանձնարարեց համապատասխան միջոցների դիմել նոր ուսումնական տարին օրինակելի նախապատրաստելու և այդ ուղղությամբ եղած թերությունները արագորեն վերացնելու համար։

Բյուրոն նրանցից պահանջեց ապահովել պարտուսի հասակ ունեցող բոլոր երեխաների ընդգրկումը դպրոցներում, ժամանակին նորոգել դպրոցական շենքերը, ձեռք բերել անհրաժեշտ քանակությամբ սեղաններ, նստարաններ, լաբորատոր սարքավորումներ, գրենական ու դասական պիտույքներ, վառելիք, արհեստանոցների համար գործիքներ, կարգի բերել դպրոցական բակերը և սպորտ հրապարակները։

Բյուրոն կոնկրետ միջոցառումներ նշեց նաև դպրոցները մանկավարժական կադրերով ապահովելու, դպրոցականների ամառային հանգիստը լավ կազմակերպելու, վերաքննություն ունեցող աշակերտներին օգնելու, դպրոցները կահավորելու և նոր ուսումնական տարվա նախապատրաստման հետ կապված մյուս աշխատանքները ժամանակին կատարելու համար։

---

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 6-ի 46-րդ էջի ներևից 15-րդ տողում կարդալ. Սովետական Ռուսաստանում... ու այնուհետև ինչպես տեքստում։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Զ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел 2—56—92

ՎՖ 10415, Պատվեր 1855 Տիրաժ՝ 9340 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 23/VI 62 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՐԺԵՔԱՎՈՐ ՊՐԵՊԱՐԱՏ ՍՏԱՆԱԼՈՒ ԷԺԱՆ ԵՂԱՆԱԿ

Հայտնի է, որ գյուղատնտեսությանը մեծ վնաս են հասցնում պարազիտ գելմինտները։ Դրանց պատճառով հաճախ կաթնատվությունը իջնում է 20—40 տոկոսով, իսկ խոճկորները կորցնում են իրենց կենդանի քաշի մոտ 1/3-ը։ Գելմինտների դեմ մղվող պայքարի առավել արդյունավետ միջոցը պիպերազինն է։ Այդ արժեքավոր պրեպարատը պատրաստվում է միայն Ռիգայի № 3 քիմիական դեղագործական գործարանում, որը տարեկան արտադրում է ընդամենը 50—80 տոննա պիպերազին։ Նախկին բարդ տեխնոլոգիական պրոցեսը թույլ չէր տալիս ավելացնել այդ կարևոր արտադրանքի թողարկումը։

Այժմ Լատվիայի Գիտությունների ակադեմիայի օրգանական սինթեզի ինստիտուտում մշակվել է պիպերազինի արտադրության պարզ և էժան եղանակ։ Պիպերազինի արտադրության ամբողջ ապարատը իրենից ներկայացնում է կատալիզատորով լի մի մետաղյա խողովակ։ Խողովակի մի ծայրից լցնում են եկման պրոդուկտը, իսկ մյուսից անմիջապես պիպերազին ստանում։ Գլխավոր նորությունը՝ կատալիզատորը, երկամյա հետազոտության արդյունք է։ Նման խողովակների սիստեմի օգնությամբ կարելի է չափազանց պարզեցնել այդ պրեպարատի արտադրության տեխնոլոգիան և շատ անգամ ավելացնել նրա արդյունաբերական արտադրությունը։

## ՍՐՏԻ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ՓԱԿԱՆ

Տուբերկուլյոզի և կրծքավանդակի խիրուրգիայի Ուկրաինական գիտահետազոտական ինստիտուտի սրտային խիրուրգիայի կլինիկայում հաջողվել է պահեստային մաս պատրաստել սրտի համար։ Այդ կլինիկայի աշխատակից Յու. Կրիվչիկովը Լենինյան մրցանակի լաուրեատ, ՍՍՌՄ Բժշկական գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Ն. Մ. Ամոսովի ղեկավարությամբ պատրաստել է սրտի արհեստական եռփեղկ փական, որի փեղկերը ձևով նման են բնականին։ Դրանք պատրաստված են տեֆլոն սինթետիկ նյութից և ամրացված հատուկ պահունակի վրա։ Վերջինս սրտի մկանների աճման համար ունի անցքեր։ Արհեստական փականն արդեն օգտագործվել է կենդանիների վրա կատարված օպերացիաներում և տվել է լավ արդյունք։

## ՊԱՅԹՅՈՒՆ—ՇԻՆԱՐԱՐԸ

Ուկրաինական ՍՍՌ շինարարության և ճարտարապետության Ակադեմիայի շինարարության կազմակերպման և մեքենայացման գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից Դ. Ռոմանովը առաջարկել է պայթեցումների օգնությամբ թույլ և նստած բնահողերում հիմքեր ստեղծել։ Դա արվում է այսպես. բետոնով լցված բացվածքի հատակում կատարում են ոչ մեծ պայթեցում։ Հողը հարվածից ճեղքվածք է տալիս և բետոնը լցնում է ստեղծված ճեղքը։ Որոշ ժամանակ անց բետոնի զանգվածը հողում, շրջված սնկի տեսք ընդունած, ամրանում է։ Նման ձևով պատրաստված հիմքերը 1,5—2 անգամ իջեցնում են շինարարության արժեքը։

## ԳՐԱՖԻՏԸ ՓՈԽԱՐԻՆՈՒՄ Է ՊՈՂՊԱՏԻՆ ԵՎ ԱՐՃՃԻՆ

Նովոչերկասկի էլեկտրոդային գործարանում պատրաստվել են գրաֆիտային հաստ խողովակների սեկցիաներ։ Այդ սեկցիաները իրենցից ներկայացնում են առոգիչ սառնարաններ։ Նրանք նախատեսված են քիմիական արդյունաբերության մեջ ագրեսիվ միջավայրի սառեցման համար։ Խաչաձև հակահոսանքը ապահովում է անհրաժեշտ սառեցումը ինչպես հեղուկ, այնպես էլ գազակերպ ագրեսիվ նյութերով։ Խողովակները, անցման անկյունակապերը և ագրեսիվ նյու-

Շարունակությունը 4-րդ էջում

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Սկիզբը 3-րդ էջում

*թերի հետ հաղորդակցվող կցաշուրթերը պատրաստված են գրաֆիտից։*

*Այդ էժան նյութը լայնորեն օգտագործվում է քիմիական ապարատուրայի արտադրության մեջ։ Այն հաջողությամբ փոխարինում է պողպատին և արճճին։*

## ՎԱԳՈՆ՝ ԱԼՅՈՒՄԻՆԻ ՀԱՄԱՁՈՒԼՎԱԾՔԻՑ

*Կալինին քաղաքի վագոնաշինարարները ալյումինի գերամուր համաձուլվածքից պատրաստել են մարդատար վագոն։ Այն նախատեսված է միջմարզային երթևեկության համար. ունի 72 փափուկ բազկաթոռ՝ ծալովի թիկնատեղերով։ Ջեռուցվում է էլեկտրականությամբ, օդը կոնդիցիոնացվում է։ Ունի հատուկ բաժանմունք ուղևորների վերնահագուստի համար։*

## ԿԱՐԵՎՈՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիային կից քիմիական հետազոտությունների կենտրոնում ակադեմիկոս Կ. Դ. Նինիցեսկուի ղեկավարությամբ աշխարհում առաջին անգամ սինթեզվել է ցիկլոբուտադիեն՝ արծաթի աղերի հետ միացնելու միջոցով։ Աշխարհի բոլոր քիմիկոսները կես դար շարունակ փորձել են սինթեզել ցիկլոբուտադիեն, բայց ապարդյուն, որովհետև այն չափազանց անկայուն նյութ է։ Նրա կառուցվածքը որոշվել է մի շարք ֆիզիկական ցուցանիշների՝ ինֆրակարմիր սպեկտորների և միջուկային—մագնիտային ռեզոնանսի հիման վրա։ Ցիկլոբուտադիենի սինթեզի ուսումնասիրությունը տեսական և գործնական մեծ նշանակություն ունի։*

## ՄԵՏԱՂԱՄՇԱԿՄԱՆ ՆՈՐ ՀԱՍՏՈՑ

*Լեհական Օպոլ քաղաքի «Ռաֆամետ» գործարանի կոնստրուկտորները և Սիլեզյան պոլիտեխնիկական ինստիտուտի գիտական աշխատողները ստեղծել են մետաղամշակման նոր հաստոց։ Նա լրիվ կփոխի երկաթուղային վագոնների և էլեկտրաքարշների առնինների նորոգման նախկին մեթոդը։ Վագոնի ներքին մասին կցված հաստոցը կատարում է առնինների մշակման ամբողջ ցիկլը, առանց դրանք հանելու։ Դրա շնորհիվ տեղի է ունենում ժամանակի մեծ տնտեսում, քանի որ քանդման և հավաքման վրա ծախսվում է նորոգման համար անհրաժեշտ ժամանակի 4/5-ը։*

## ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ԹՌՉՆԱՖԵՐՄԱ

*Ամերիկայի Միացյալ Նահանգների Սոկ—Սիտի քաղաքի մոտի թռչնաֆերմայում 40 հազար հավերի խնամում են երկու մարդ։ Բոլոր գործողությունները, սկսած մթնոլորտի հսկողությունից, վերջացրած լուսավոր օրվա տևողությունը կարգավորելուց, լրիվ ավտոմատացված են։ Ֆերմայի երեք թռչնանոցները միացված են «T» տառի տեսքով։ Հնկիչ պուլտի տեղադրման համար այդ դիրքը առավել հարմար է։ Կերը մատուցվում է ավտոմատ ձևով. արտաքին բունկերից այն ինքն իրեն լցվում է ներքին բունկերը։ Թռչնանոցների մշտական ջերմությունը լինում է մոտ C 18°։*

## ԿԱԲԵԼ՝ ԽԱՂԱՂ ՕՎԿԻԱՆՈՍԻ ՏԱԿ

*1964 թվականին Ճապոնիայում պետք է անցկացվեն հերթական օլիմպիական խաղեր։ Մինչև այդ նախատեսված է ավարտել նոր ստորջրյա կաբելի անցկացումը Խաղաղ օվկիանոսի միջով, որի նախագիծը այժմ քննարկվում է։ Կաբելը պետք է անցկացնեն Ճապոնիան և Միացյալ Նահանգները։ Կաբելը Սան-Ֆրանցիսկոյից պետք է անցնի մինչև Տոկիո միջակա կետերի վրայով՝ Հավայան կղզիներ, Միդուեյ, Գուամ կղզիներ, Ճյուղավորվելով դեպի Իվոդզիմա կղզին։*